



Ի՜նչ երջանիկ է այս փոքրիկ տղան։ Շատերի հետ նա էլ այս տարի դպրոց կգնա։ Նրանց համար այսօր առաջին անգամ կհնչի դպրոցի զանգը, որի քաղցր զրնգոցը երկա՜ր ժամանակ կյանքում կուղեկցի նրան։





Նկարները Նինիկ Վարդանյանին ավելի շատ բան են ասում, քան բառերը, բայց նա կարդում է մտքում, կարդում է նկարը և նրան թվում է, թե գրերն է կարդում։ Աշուն է. գետակ, գետափին՝ տնակ, տնակում ապրում է, ո՞վ, մտածում է փոքրիկ Նինիկը. դե, իհարկե, նապաստակը, հենց այն շլդիկը, որ մանկապարտեզում իր հետ պտտվում էր տոնածառի շուրջը։ Նա մնաց մանկապարտեզում, իսկ ինքը դպրոց է եկել։ Նապաստակը գիրք չի կարողանում կարդալ, բայց ինքն արդեն կարդում է, հետո ի՞նչ, որ տառերը չգիտի։ Մի՞թե ճիշտ չի կարդում, աշուն է, գետակ, գետափին՝ շլդիկի տնակը, իսկ տնակում ո՞վ է ապրում, դե, իհարկե, շլդիկը։



Չեք հավատո՞ւմ, որ ես դպրոց եմ գնալու, փոքր եմ, դրա համար չեք հավատո՞ւմ։ Տեսեք, ես գիտեմ, թե երբ են բոլորը դպրոց գնալու։ Ա՛յ, բաց եմ արել օրացույցը։ Սեպտեմբերի մեկին մենք կհանդիպենք։ Իմ անունը Սանդըղչյան Արտաշես է։



Ես ձեր դպրոցում եմ սովորելու, իմ անուն ազգանունը Անահիտ Բաբաջանյան է, իսկ քոնը ես գիտեմ՝ Լարիսա Փանյան։ Դու երկրորդ դասարանում ես սովորում, այդ էլ գիտեմ, բայց առաջին դասարանում թե չես սովորել, երկրորդ չես փոխադրվի։ Դրա համար էլ առաջին դասարան եմ ընդունվել, թե չէ կարող էի երրորդ դասարանում լինել։ Մայրիկս ասում է՝ ես ընդունակ բալիկ եմ։

# Գնանք այս տարի




# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

№ 9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1956 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ





*Ինչ լավն է չէ՞, այս համազգեստը հենց հագնում ես, դպրոցական ես դառնում։ Ինչո՞ւ մայրիկը ավելի շուտ չկարեց։ Եթե երկու տարի առաջ կարեր, ես արդեն երրորդ դասարանում կլինեի և տետրերիս վրա կկարողանայի գրել երրորդ դասարանի աշակերտ՝ Գայանե Ջբչյան։*

*— Ես դպրոց եմ գնալու, իսկ դուք դեռ փոքր եք, եկող տարի կգաք։ Երբ գաք, ես արդեն գրել-կարդալ կկարողանամ։ Կգաք ու կհարցնեք՝ որտե՞ղ է երկրորդ դասարանի աշակերտ Աշոտ Գասպարյանը։ Իսկ ես ձեզ կծանոթացնեմ, թե դպրոցում ինչ կա, ով ինչպիսին է։*

*Արտակ Գյոզալյանը, Վահիկ Քուրդյանը և Միքայել Փոթիկյանը հիացմունքով լսում են դպրոցականի համազգեստ հագած Աշոտիկին, որ դեռ անցյալ տարի իրենց մանկապարտեզում էր։*



*— Ա՛յ, դու իմ լավ բալիկս, սա քո գործերն են՝ երաժշտական դպրոց ընդունվելու համար։ Այստեղ գրված է, որ № 59 մանկապարտեզի սան Հրաչիկ Կոտիկյանը շատ երգեր, ոտանավորներ է սովորել մանկապարտեզում, որ միշտ խմել է ձկան յուղ և չարություն չի արել։*

*— Մորաքույր Արուսյակ Սրապյան, երբեք չեմ մոռանա ձեզ, ազնիվ մանկապարտեզի խոսք, չեմ մոռանա մեր մանկապարտեզը։*

## Դպրոց կգնանք

# ԻԼՅԻՉԸ ԺՊՏՈՒՄ ԷՐ

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. Օ. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Սկսվեց վերջին դասը։

Վահանիկը նստած էր պատուհանի տակ։ Նա գլուխը դանդաղ վեր բարձրացրեց ու նայեց դուրս։ Անձրևի խոշոր կաթիլները ծեծում էին պատուհանը, լվանում ապակիներն ու թափվում ցած։

Դասարանում քար լռություն էր. բոլորը լսում, կլանում էին ուսուցչուհու ասածները։ Չէ՞ որ նա պատմում էր Իլյիչի մասին, ցույց էր տալիս նկարներ ու պլակատներ, ուր պատկերված էին մեծ առաջնորդն ու երեխաները։

Աշակերտները տեղերից ձգվելով դիտում էին, իսկ ուսուցչուհին պատմում էր ու պատմում։ Եվ այդ օրվա նրա բոլոր պատմությունները այն մասին էին, թե Վլադիմիր Իլյիչ Լենինն ինչպես է վարվել փոքրերի հետ։

Վահանիկը շատ էր սիրում Իլյիչին. նա մայրիկին խնդրել էր, որ Լենին պապի նկարը փակցնի իր մահճակալի վերևը և մայրիկն այդպես էլ արել էր։



Բայց այժմ Վահանիկը չէր կարողանում երկար նայել Իլյիչի նկարին, կարծես Իլյիչը կշտամբում էր նրան... Նա հիշեց, որ երեկ դպրոցից դուրս գալիս, թափով հրեց իրենից առաջ կանգնած փոքրիկներին։ Նրանցից մեկն ընկավ ու քիթն արնոտեց։ Այս հիշելով, նա նորից նայեց ուսուցչուհու ցույց տված Իլյիչի նկարին և նրա աչքերում նորից կշտամբանք կարդաց։ Զանգը խփեց։

Երեխաները դուրս եկան փողոց։ Անձրևաջրով ողողված ծառերն ու կանաչները ժպտում էին արևին։ Վահանիկը զգուշությամբ անցավ իրենից առաջ քայլող երեխաների կողքից և, հակառակ իր սովորության, ջուրը չճղփացրեց նրանց վրա։

Ահա այդտեղից մի փոքրիկ առու էր անցնում։ Ջուրն այդ օրը շատացել էր, փոքրիկները չէին կարողանում անցնել։ Բարձր դասարանի աղջիկները հերթով գրկելով ջրից անց էին կացնում փոքրիկներին...

Վահանիկին այդ դուր եկավ։ Նա հիշեց, որ մի քանի օր առաջ հենց նույն ջրի մեջ գցեց Տաթեվիկի գնդակը։ Տաթևիկը լաց լինելով թավալվեց գետին, իսկ ինքը վազեց դպրոց...

Վահանիկի դեմքը մռայլվեց, կարծես ինքն իրենից ամաչեց։

«Ա՛յ, թե քաջություն է հա՜, չորս տարեկան երեխայի ձեռքից գնդակը խլել ու ջուրը գցել...»։

Այսպես մտածելով Վահանիկը քայլում էր առաջ, հանկարծ փողոցի մեջտեղում նա նկատեց չորս-հինգ տարեկան մի երեխայի։ Նրա ոտքերը





թրջվել ու ցեխոտվել էին, կարծես դիտմամբ նա քայլում էր ջրափոսերի միջով, իսկ երբ մտավ ավելի խոր փոսի մեջ, կանգնեց ու մերթ մի ոտը բարձրացնելով, մերթ՝ մյուսը, սկսեց ջրի հետ խաղալ։ Մի անգամ էլ ոտքը խփեց ու չը՜մփ... գլորվեց ջրի մեջ։

Վահանիկը մոտեցավ նրան։ Երեխան մեծ դժվարությամբ ոտքի կանգնեց. Վահանիկն ուշադրությամբ նայեց տղային, բայց չճանաչեց։ Այս տղային առաջին անգամն էր տեսնում։

Անծանոթ տղան ոտքից-գլուխ ցեխոտվել էր։ Վահանիկը երկարացրեց ձեռքը.

— Ե՛կ, դո՛ւրս եկ, ինչո՞ւ ես մտել այդ կեղտոտ ջրի մեջ։

Փոքրիկը մեկնեց ձեռքը, Վահանիկը նրան դուրս հանեց ջրից.

— Դե՛, գնա ձեր տուն, գնա, շո՛ւտ,— հրամայեց Վահանիկն ու վազեց առաջ։ Բայց մի քանի քայլ գնալով կանգ առավ։ Անծանոթ տղան լաց էր լինում։

«Ի՞նչ անել», մտածեց Վահանիկը ու ետ դարձավ։

— Ինչո՞ւ ես կանգնել։ Ես քեզ ասացի, որ գնաս ձեր տուն,— ձայնը բարձրացրեց Վահանիկը։

Փոքրիկը երևի ոչինչ չհասկացավ նրա ասածից։ Նա շարունակեց շուրջը նայել ու ավելի բարձր ձայնով լալ։

— Մրսո՞ւմ ես,— կռանալով մեղմությամբ հարցրեց Վահանիկը։

— Հա,— արցունքների միջից պատասխանեց տղան։

— Չգիտե՞ս, ո՞րն է ձեր տունը։

Տղան չպատասխանեց։ Գլուխը շարժեց ու շարունակեց լաց լինել։

Վահանիկը թողեց երեխային ու շարունակեց ճանապարհը։ Փողոցի անկյունից ավտոմեքենայի սուլոց լսվեց։ Վահանիկը վախեցած կանգնեց... Իսկ եթե հանկարծ մեքենան անցնի այս փողոցով և փոքրիկին գցի տա՞կը... կամ նա այդպես թրջված երկար մնա ու մրսի՞...,— մտածեց նա ու արագ ետ վազեց երեխայի մոտ։ Նա բռնեց փոքրիկի ձեռքից, բայց վերջինս մի երկու քայլ անելով, նստեց թաց գետնին ու շարունակեց լաց լինել։



Վահանիկը քնքշությամբ ասաց.

— Արի՛, արի՛ ինձ հետ, տանեմ մեր տուն։

Փոքրիկը հրաժարվեց։

— Վա՜յ, տատիկ ջան,— արցունքների միջից հազիվ արտասանեց նա։

— Այ քեզ բան, այս ինչ դժվար գործ է եղել փոքրերին օգնելը, ի՞նչ անեմ հիմա ես,— գրեթե բարձրաձայն ասաց Վահանիկը, ապա երեխային շալակելով, ճանապարհ ընկավ։ Սկզբում տղան ծանր էր թվում, բայց երբ նայեց նրա փոքրիկ ձեռքերին, որոնք ամուր փաթաթվել էին վզին, անչափ գոհ մնաց իր արածից ու կարծես դրանից երեխան թեթևացավ։ Վահանիկը արագացրեց քայլերը։

— Դե ասա՛,— հարցրեց Վահանիկը,— անունդ ի՞նչ է։

— Մուշեղ,— պատասխանեց տղան։

— Մուշե՛ղ, հիմա ո՞ր կողմը գնանք։

— Չգիտեմ,— պատասխանեց Մուշեղը, որն արդեն հանգստացել էր։ Նա Վահանիկի տաք մեջքին իրեն շատ լավ էր զգում և հիմա նրա համար միևնույն էր, թե որ կողմը կգնային։

«Կտանեմ մեր տուն, հետո կիմանանք ում երեխան է», մտածում էր Վահանիկը։

Հանկարծ դիմացից մի սպիտակ շուն վազելով եկավ ու հարձակվեց Վահանիկի վրա։ Վահանիկը վախեցավ, քիչ մնաց երեխային շալակից ցած գցեր, բայց դա կարճ տևեց, շունը փաթաթվեց

Վահանիկի ոտքերին ու սկսեց լիզել կոշիկները, ապա դուրս թռավ ոտքերի արանքից ու բռնեց Մուշեղի փեշերից։ Մուշեղի արցունքոտ աչքերը ժպտացին։ Սկզբում Վահանիկը ոչինչ չհասկացավ, իսկ երբ Մուշեղն ասաց— Քոթոթ, տատիկն ո՞ւր է,— շունն ուրախ վեր-վեր ցատկեց, թափահարեց պոչն ու առաջ ընկավ։

Վահանիկն ամեն ինչ հասկացավ ու գնաց շան ետևից։ Քոթոթը վազում էր առջևից, շուտ-շուտ ետ էր նայում, դունչը քսում ոտքերին ու նորից առաջ վազում։

— Մուշե՛ղ, ա՛յ Մուշեղ,— մոտիկ տների արանքից լսվեց մի ձայն։

Վահանիկը կանգնեց։ Քոթոթն ուրախ կլանչեց։ Նրանց մոտեցավ մի տարեց կին։

— Ա՛յ Մուշեղ, դու ո՞ւր կորար իմ մոտից, հոգիս դուրս եկավ քեզ փնտրելով,— ասաց նա, Վահանիկի շալակից իջեցնելով թոռնիկին։— Վա՜յ, քոռանամ ես, տղա ջան, այս ի՞նչ է եղել, ամբողջովին ցեխոտվել ես, եկ ինձ հետ, եկ մաքրեմ շորերդ։

— Ոչի՛նչ, տատիկ ջան, ես ինքս կմաքրեմ,— ասաց Վահանիկն ու գրքերի պայուսակը վերցնելով վազեց տուն։

Պառավ կինը դեռ նայում էր նրա ետևից։ «Ո՞ւմ տղան էր, տեսնես, վա՜յ, շնորհակալությամբ էլ չհայտնեցի, ծտի պես թռավ», ասաց նա ինքն իրեն։



Վահանիկը վազեց տուն, գրքերի պայուսակը գցեց սեղանին և այն է, պատրաստվում էր դուրս գալու, երբ աչքը դիպավ մահճակալի վերևում փակցրած Լենինի նկարին։ Իլյիչը ժպտում էր իրեն։



Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Իջավ թանձր, անաստղ երեկոն։ Երկինքը ծածկված էր ծանր, մութ ամպերով, օդը խաղաղ էր, գաղջ, ծառերի վրա ոչ մի տերև չէր շարժվում, երևում էր, որ անձրև էր գալու։

Հայկը կանգնել էր գյուղից դուրս, անտառի պռնկին, մի մեծ ծառի տակ։ Նա լուծվել էր խավարի մեջ, կպել ծառի բնին և անհամբեր սպասում էր Վազգենին։ Նրան թվում էր, թե արդեն վաղուց է անցել պայմանավորված ժամը, որ շուտով կես գիշեր կլինի։ Նա մութ անտառից չէր վախենում, բայց սիրտն անհանգիստ թրթռում էր, ամեն վայրկյանը տարի էր թվում։

Վերջապես ոտնաձայն լսվեց։ Հայկը հասկացավ, որ այդ Վազգենը պետք է լինի, սակայն չգիտես ինչու, վախեցավ և ավելի ամուր կպավ ծառի բնին։

— Հա՞յկ։

— Վազգե՞ն։

Երկու ընկերներն իրար մոտեցան։

— Ինչո՞ւ ուշացար,— շշնջաց Հայկը։

— Ո՞նց թե ուշացա, մենք ժամը տասի համար չէի՞նք պայմանավորվել։

— Է՞։

— Հիմա դեռ տասը չկա, այդ դու ես շտապել։

Լռեցին և իրար ձեռք բռնած սկսեցին բարձրանալ բլուրն ի վեր։ Մութ էր, բայց գնում էին անսխալ և անաղմուկ, որովհետև այդ ճանապարհը շատ լավ ծանոթ էր նրանց։ Այդպես լուռ էլ հասան բացատին։ Շուրջն այնքան խորհրդավոր էր, որ ակամայից սարսռացին։

— Այս կողմն արի,— շշուկով ասաց Վազգենը,— թաքստոցն այստեղ է։

Թաքստոցը հեշտությամբ գտան, վերցրին ոսկե իրերն ու պսպղուն հուլունքները և շտապ ետ դարձան։ Բայց վերադառնալիս, երբ անցնում էին իրենց փորած փոսի մոտով, Հայկը հանկարծ շշնջաց.

— Այն ի՞նչ է։

Փոսի մի անկյունում պսպղում էր մի կանաչավուն կրակ։

Երկուսն էլ վախից քարացան։ Մի՞թե այստեղ մարդ կա, մի՞թե փոսն արդեն հսկում են, անցավ նրանց մտքով։ Մեխվել էին տեղում և դյութվածի նման նայում էին կրակին։ Հայկը դողացող ձեռքով բռնեց ընկերոջ թևից և հազիվ լսելի շշնջաց.

— Գնանք։

— Սպասիր,— պատասխանեց Վազգենը,— սա ճրագի նման չի, տեսնո՞ւմ ես, ինչ տարօրինակ լույս է։

— Միևնույն է, գնանք,— լացակումած կրկնեց Հայկը։

Բայց Վազգենը, հանկարծ սիրտ առնելով, թռավ փոսի մեջ։ Մի վայրկյան լույսը մարեց, Հայկը հասկացավ, որ Վազգենը կռացել է կրակի վրա։

— Հը՜։

— Արի,— ասաց Վազգենը։

Հայկը սահեց փոսի մեջ, նա էլ կռացավ և զարմանքով նկատեց, որ կրակը չի տաքացնում։

Վազգենը ձեռքը դեպի կրակը տարավ, որը հպումից փշրվեց ու շաղ եկավ պսպղուն ավազի նման։

— Փտած ոսկոր է,— ասաց Վազգենը։

— Ոսկո՞ր։

— Այո, փտած ոսկորները մութ գիշերներին լուսատտիկների նման լույս են արձակում։

— Այդ ես էլ գիտեմ, բայց ի՞նչ գործ ունի այստեղ փտած ոսկորը։

— Ո՞նց թե ինչ գործ ունի, հապա քո կարծիքով էս բերդում մարդ չի՞ ապրել։

Նրանք դուրս եկան փոսից և նոր միայն նկատեցին, որ մանրիկ կանաչավուն կայծեր էին պըսպըղում նաև հողաթմբի վրա։

— Ուրեմն, դրանք մե՞նք ենք դուրս թափել հողի հետ։

— Այո՛, իհա՜րկե։

— Լսիր, Վազգեն, իսկ գուցե այդ ոսկորները նշանակություն ունեն հնագետների համար։

— Ո՞վ գիտի։

— Իսկ մենք դրանք փշրել ենք ու չենք էլ նկատել։

— Լավ է, ոչ ոք չգիտի, որ մենք ենք փորել,— ասաց Վազգենը,— թե չէ դրա համար էլ լավ դաս կստանայինք։

Փտած ոսկորների հայտնագործությունը, թվում էր, թե վերջնականապես համոզեց նրանց, որ փոսի և առհասարակ կատարվածի մասին ոչ ոքի չըպետք է ասել։



Երկու օր հետո Վազգենն ու Հայկը քաղաքում էին։ Նրանք իրենց հետ տարել էին ոսկե օղակներից մեկը։ Շրջում էին փողոցից փողոց, մտնում հատկապես այն խանութները, որտեղ հեծանիվներ էին վաճառում։ Նրանք երազուն աչքերով նայում էին հեծանիվներին, նույնիսկ ձեռքները քսում հեծանիվների դեռևս յուղոտ մասերին և պատկերացնում, թե ինչ հրաշալի բան կլինի, եթե քաղաքից վերադառնան երկուսն էլ՝ նոր հեծանիվների վրա նստած։

Սակայն քաղաքում նրանց առաջ հանկարծ ծառացավ մի հարց. ո՞ւմ և ինչպե՞ս վաճառել ոսկյա օղակը։ Երկար մտածեցին։ Վերջապես Վազգենն ասաց.

— Գիտե՞ս ինչ, արի մոտենանք որևէ կնոջ։

— Իսկ եթե հարցնի, թե որտեղի՞ց է։

— Ինչո՞ւ պիտի հարցնի, նրա համար միևնույնը չի՞։

— Լա՛վ, դու գիտես,— համաձայնեց Հայկը։

Բայց ասելը հեշտ էր, իսկ անելը՝ դժվար։ Նրանք երկար ժամանակ կանգնած էին բանուկ փողոցի մայթի վրա, ուշադրությամբ դիտում էին յուրաքանչյուր անցնող կնոջ, բայց մի տեսակ անհարմար էին զգում մոտենալ։ Մեկը շատ խիստ էր թվում, մեկն շտապում էր, մեկը չգիտես ինչու, թվում էր, որ միևնույն է, չի գնի։ Հետո շատ էին անցորդները։ Վազգենի առաջարկով բանուկ փո-

* Սկիզբը տե՛ս «Պիոներ» № 6, 1956 թ.։



ղոցից հեռացան, մտան մի նեղ փողոց, որտեղ անհամեմատ մարդիկ քիչ էին հանդիպում։

Մի կին անցավ մթերքի պայուսակը ձեռքին, ուզում էին նրան մոտենալ, բայց կինը հանկարծ ծռվեց ու մտավ բակը։ Հետո էլի անցան՝ մեկը, երկուսը, երեքը։ Բոլորն էլ տղաների կարծիքով՝ խիստ ու անհամապատասխան։

Վերջապես փողոցի ծայրին երևաց մի կին։ Նա դեպի տղաներն էր գալիս՝ բռնած փոքրիկ աղջկա ձեռքից, զրուցում էր երեխայի հետ և բարձրաձայն ծիծաղում։

— Սրան,— ասաց Վազգենը։

— Առ, միևնույն է, ես չեմ կարող,— պատասխանեց Հայկն ու ոսկե օղակը ընկերոջը մեկնեց։

— Չէ՛, չէ՛, ավելի լավ է, դո՛ւ։— Վազգենը ետ հրեց ընկերոջ ձեռքը։

Հենց այդ ժամանակ կինը նկատեց նրանց.

— Այդ ի՞նչ է, տղաներ,— հարցրեց նա։

Հայկն արագությամբ գրպանը խոթեց ոսկե օղակը։

— Այդ ի՞նչ էր,— կրկին հարցրեց կինը՝ նրանց առջև կանգնելով։

—Մ...մատանի,— թոթովեց Հայկը։

— Ապա ցույց տուր,—հրամայական ձայնով ասաց կինը։

Հայկն ուզում էր գրպանից հանել օղակը, բայց կինը հանկարծ հարցրեց.

— Որտեղի՞ց։

— Մայրիկինս է,— ստեց Վազգենը։

— Գողացե՞լ եք։

— Ո՞նց թե գողացել ենք,— շփոթված ասաց Հայկը։

Իսկ Վազգենն ավելացրեց.

— Մայրիկն է տվել։

— Տարօրինակ մայրիկ է,— քմծիծաղ տվեց կինը,— ապա մի եկեք ինձ հետ։

Նա ձեռքը պարզեց, որ բռնի Հայկի ուսից, բայց տղաները միանգամից տեղից պոկվեցին և, մինչև կինն ուշքի կգար, նրանք արդեն փախչում էին՝ անցնելով փողոցից փողոց։

Վազեցին մինչև քաղաքի ծայրը, հետո հոգնած կանգ առան ու նայեցին իրար...

***

Այդ դեպքից հետո երկու ընկերներն ավելի շփոթվեցին, մանավանդ, երբ իմացան, որ բլրի վրա հսկողություն է սահմանված ու գործը քննելու համար շրջկենտրոնից քննիչ է եկել։ Գյուղում մի քանի շաբաթ բոլորն առեղծվածային փոսի մասին էին խոսում, օր-օրի երևան էին գալիս ավելի ու ավելի ֆանտաստիկ ենթադրություններ։ Կային մարդիկ, որ պատմում էին, թե իբր մի ամիս առաջ բլրի վրա անծանոթների են տեսել։ Այս ու այնտեղ նույնիսկ խոսում էին, թե այդ փոսից ինչ-որ մարդիկ գանձ են հանել, որ մի ժամանակ

թաղված է եղել հենց Հովսեփ պապի պատմած «ողորմած հոգի» վարդապետի ձեռքով։

— Ի՜նչ պեղում, ի՜նչ բան,— ասում էին այդպիսիները,— էդ վարդապետը մեծ փող ա ունեցել, բերել ա էս չոլումը պահել, հետո էլ մեռել ա։ Էս ու էն տեղն իմացել են, եկել են հանել։

— Տես, է՜,— գլուխներն օրորում էին պարզամիտ մարդիկ, իսկ Հովսեփ պապը տարակուսած ասում էր.

— Չէ՛, էն ողորմած հոգի վարդապետն էդ տեսակ մարդ չէր։

Վազգենն ու Հայկը լսում էին, լսում ու ավելի մռայլվում։ Նրանց մեջ կատարվող փոփոխությունն այնքան զգալի էր, որ ընկերները նկատում էին և հաճախ հարցնում.

— Ի՞նչ է պատահել, տղերք։

Այդպիսի դեպքերում նրանք ոչինչ չէին կարողանում պատասխանել, միայն ուսերն էին թոթվում և շտապում էին հեռանալ, ընկերներին տարակուսանքի մեջ թողնելով։ Օրեցօր ուկե իրերը կորցնում էին իրենց հմայքը։ Նրանք ավելի ու ավելի էին ատում այդ հիմար օղակները։ Այժմ ոչ մի հեծանիվ այլևս չէր հրապուրում նրանց։ Իսկ երբ, մի երեկո, ընկերներից մեկն ասաց, թե ինչպիսի բաներ կգներ, եթե ինքը գտած լիներ գանձը, Հայկըն այլևս չհամբերեց և ասաց.

— Դու հիմար ես, ա՛յ թե ինչ։

Քիչ էր մնում կռիվ ծագեր Հայկի ու այդ տղայի միջև, բայց մյուս տղաները պաշտպանեցին Հայկին, առանց իմանալու, որ դրանով հենց նրա սիրտն են խոցում։

— Ազնիվ մարդը գողի նման գանձը չի տանի։

— Դա մեկ է, թե գողանաս։

Գանձի մասին երազող տղան գլխին սառը ջուր լցրածի նման շշմել էր։

— Դե, ես հենց այնպես ասացի, իհարկե, չի կարելի։ Դե, ի՞նչ եք կպել ինձ, հո ես չեմ գողացել գանձը,— շփոթված պաշտպանվում էր նա։

Հայկը հեռացավ ընկերներից, գնաց գտավ Վազգենին, մի առանձնացած անկյուն տարավ և ասաց.

— Ի՛նչ հիմարություն արինք, ի՛նչ հիմարություն...

— Ի՞նչն էր հիմարություն։

— Այն, որ փորում էինք, այն, որ գտանք այդ զզվելի իրերը, այն, որ պահեցինք...

— Ինչ որ եղել է, եղել է,— պատասխանեց Վազգենը,— միևնույն է, այժմ արդեն սխալն ուղղել հնարավոր չէ։

— Ինչո՞ւ։

— Իսկ ի՞նչ կարելի է անել։

— Դնանք ու ամեն ինչ ասենք։

— Կասես, ո՞նց չէ, իսկ չե՞ն հարցնի, թե ինչու էինք մինչև հիմա լռում։ Ամբողջ գյուղը տարակուսանքի մեջ է, շրջկենտրոնից քննիչ եկավ, նույնիսկ բլրի վրա հսկողություն են սահմանել...

— Դե, մենք կասենք...

— Կասենք, կասենք... Ի՞նչ կարող ենք ասել, ոսկե իրե՞րը ցույց կտանք, իսկ ո՞վ կհավատա, թե մենք հենց միայն այդ ենք հանել։ Ամբողջ գյուղն ասում է, թե այնտեղ հսկայական գանձ է եղել։

— Ա՛խ, երանի, թե այն օրն այն մի երկու բուռ հողը դուրս չթափեինք, մատանին չէր գտնվի, ու մենք էլ հիմա հանգիստ կլինեինք բոլորի նման...

***

Ամառն անցավ։ Դպրոցական տարին սկսվեց։ Հենց առաջին օրվանից դպրոցում զգացին, որ Հայկն ու Վազգենը առաջվա ուրախ տղաները չեն։ Լուռ էին, քաշված, ընկերների կատակներին ու խաղերին գրեթե չէին մասնակցում, դասամիջոցներին մի կողմ էին քաշվում ու քչփչում իրար հետ։ Երկուսն էլ հրաժարվեցին թատերական խմբակից, մինչդեռ անցյալ տարի այդ խմբակի ամենաակտիվ մասնակիցներն էին։ Դասերի ժամանակ անուշադիր էին, ցրված, կարծես անհամբեր սպա-



սում էին վերջին զանգին՝ դպրոցից փախչելու համար։

Ո՛չ ոք չէր կարողանում հասկանալ տարօրինակ փոփոխության պատճառը։ Ընկերներն ու դասղեկը եղան Հայկենց ու Վազգենենց տանը, հարցուփորձ արին, բայց ոչինչ չկարողացան պարզել։

Այդպես անցավ մի քանի շաբաթ։ Դասարանն առաջին ստուգողական թելադրությունը գրեց։ Վազգենն ու Հայկը շատ վատ գրեցին այդ թելադրությունը, մի բան, որ տարօրինակ էր ոչ միայն ընկերների, այլև ուսուցչի համար, քանի որ լեզվից նրանք դասարանի լավագույն աշակերտներն էին համարվում։

Տետրակները բաժանելիս ուսուցիչը երկուսին էլ ոտքի կանգնեցրեց և նեղացած ասաց.

— Ես չեմ կարող հասկանալ, գիտե՞ք, մի տեսակ վիրավորական է, մի՞թե մի երեք ամսում դուք մոռացել եք գրելը։ Հայկ, եկ գրատախտակի մոտ։

Հայկը դանդաղ մոտեցավ գրատախտակին։

— Ապա գրիր, տեսնենք ինչպես է գրվում «բերդ» բառը։

— Ի՞նչ,— խզված ձայնով հարցրեց Հայկը։

— Բերդ։

Ու այդ ժամանակ բոլորի համար անհասկանալի մի բան պատահեց։ Հայկը գունատվեց, երերաց ու հազիվ լսելի ձայնով շշնջաց.

— Չեմ կարող, չեմ կարող...

Իսկ Վազգենն արագ դեպի դուռը վազեց ու թռավ միջանցք։



Երեք օր հետո թերթում գրված էր.

«Ս. գյուղի մոտ, անտառապատ փոքրիկ բլրի վրա, հին բերդատեղում երկու աշակերտ այս ամառ պեղումներ են կատարել։ Պատահաբար նրանք փորել են հենց այն տեղը, որտեղ տասնյակ տարիներ առաջ պեղումներ է կատարել հայտնի հնագետ Գ. Լ.-ն։ Երեխաները գտել են մի երկաթե վահան, մի կնիք, նետերի մետաղե ծայրեր և մի սուր։ Այս բոլոր իրերը հնագիտական խոշոր արժեք են ներկայացնում։ Գտնվել են նաև այլ առարկաներ, որոնք հնագիտական որևէ արժեք չունեն, ինչպես օրինակ՝ մատանի, երեք հատ ոսկյա ապարանջան և մարգարիտներ։ Բոլոր իրերը հանձնված են հնագիտական թանգարանին։ Հնությունների պաշտպանության կոմիտեն բլուրն առել է հսկողության տակ։ Եկող գարնանն այնտեղ խոշոր պեղումներ են սկսվելու»։

Վազգենի ու Հայկի կյանքը կրկին նորմալ հունի մեջ ընկավ։ Ճիշտ է, պեղումների փորձը նրանց փառք չբերեց, իսկ հեծանիվը մնաց որպես անկատար երազ, բայց նրանց սրտերը թեթևացան, ուսերից կարծես թե ծանր բեռ ընկավ։



# Դպրոցին



ՆԿ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Պայծառ կարոտով գալիս եմ նորից,
Նորից քո գիրկը դպրոց հարազատ.
Ուսուցիչներս ողջունում են ինձ
Բացած իմ կյանքի ճամփան լուսազարդ:
Տեսնում եմ ահա իմ ընկերներին
Ուրախ երգերով իմ կողքին կանգնած,
Բարի ժպիտը նրանց դեմքերի
Սիրտս լցնում է խնդությամբ անանց:
Եվ զգում եմ ես, որ այսօր՝ ահա
Ինձ պես երջանիկ, խնդությամբ անմար
Բոլորն են քայլում այս ճամփով հիմա
Եվ բոլորինն է ապագան պայծառ...

Ռ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

## ՔՈՒՅՐԻԿԻՍ

Յոթ տարեկան է մեր
Փոքրիկ Խաթունիկը,
Դպրոց տարավ այսօր
Նրան իր մայրիկը:

Հայրիկը նվիրեց
Պայուսակն ու գիրքը,
Աշակերտ է արդեն
Փոքրիկ Խաթունիկը:

Մոռացել է քույրս
Արջուկն ու տիկնիկը,
Նա սիրում է այնքան
Իր նոր դասագիրքը:

Է. ՄԻՆԱՍՅԱՆ

## ԻՄ ՊԱՅՈՒՍԱԿԸ

Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ

Դպրոց եմ տանում
Ինձ հետ ամեն օր,
Մայրիկիս գնած
Պայուսակը նոր:
Գրքեր կան, տետրեր
Իմ պայուսակում,
Վրձին, մատիտներ,
Ներկեր գույնզգույն:
Կա փոքրիկ քանոն,
Գրիչ ու ռետին,
Իսկ ավելորդ իր
Երբեք չեք գտնի:
Դասի գնալիս
Ես չեմ մոռանում՝
Օրագիրս միշտ
Այնտեղ եմ դնում:
Կարգ ու կանոն կա
Իմ պայուսակում,
Ինչ պետք է գալիս,
Գտնում եմ իսկույն:
Լավն է, գեղեցիկ
Պայուսակը իմ,
Դարձել է նա ինձ
Ընկեր մտերիմ:
Ես շատ եմ սիրում
Պայուսակն իմ նոր,
Դպրոց եմ տանում
Ինձ հետ ամեն օր:





# ԱՆԶՐԵՎԸ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ        ՆԿ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Հի՛, հի՛, հի՛, հի՛,— ծիծաղում է Համոն:

— Հի՛, հի՛, հի՛, հի՛...—ծիծաղում է Վազգենը: Ու Գառնիկն էլ է ծիծաղում.

— Հի՛, հի՛, հի՛...

Որ Համոն ու Վազգենը ծիծաղում են, այդտեղ ոչ մի տարօրինակ բան չկա: Դե, նրանք ինչի՞ վրա չեն ծիծաղում: Բավական է,որ նայեն իրար երեսի՝ բերանները բաց կանեն մինչև ականջներն ու կսկսեն ծիծաղել: Դեպքեր են պատահում, որ գուցե ավելի կսազի, եթե լաց լինեն. օրինակ՝ երբ Համոյին դաս են հարցնում, տեղից վեր է կենում, և ասում.

— Չգիտե՛մ,— ու բերանը բաց անելով ծիծաղում է:

Համոն ու Վազգենը ամբողջ տարին չորրորդ դասարանում սովորեցին այդպես ծիծաղելով ու հրհռալով, ծիծաղելով վերաքննություններ ստացան, ու վերաքննություններից էլ կտրվեցին, ծիծաղելով մնացին չորրորդ դասարանում: Այստեղ էր, որ նրանց հասավ Գառնիկը: Ու տարօրինակն այն էր, որ Գառնիկն էլ սկսեց ծիծաղել:

Տեղին է ասված. «շատ ծիծաղողը, վերջը լաց կլինի»:

Բայց երևի Գառնիկն այդ մասին չգիտեր: Չորրորդ դասարանում հենց առաջին օրվանից Համոն ու Վազգենը նրա քեֆը բերին: Երբ Համոն ու Վազգենը դասի ժամանակ աղմկեցին՝ թվաբանության դասատու Լևոնյանը դիմեց նրանց.

— Սարգսյան, Մաթևոսյան, ոտքի՛:

Համոն ու Վազգենը կանգնեցին:

Բոլորը նայեցին ոտքի վրա կանգնած-մնացած տղաներին: Երևի ոչ ոք նրանց չնախանձեց: Չէ՛, այդ հարցում այնքան էլ ճիշտ չենք: Գտնվեց մի հոգի, որը նախանձեց նրանց: Հիմա չեք հավատա, կզարմանաք: Ի՞նչ արած, զարմանալի է, բայց այդպես է. նրանց նախանձեց Գառնիկը: Իհարկե, նախանձեց ոչ նրա համար, որ Համոն ու Վազգենը երկտարեցիներ են, չէ՛, այդտեղ ամենահիմար տղան էլ դժվար թե նախանձելու բան գտնի: Պարզապես, այդ տղաները Գառնիկին շատ քաջ թվացին: Քաջ, համարձակ: Ախր ամբողջ դասարանը նրանց է նայում, իսկ նրանք, ամոթից կարմրելու փոխարեն իրար երեսի են նայում ու բերանները լայն բաց արած ժպտում:

Այդ դասից հետո էր, որ Գառնիկը հիացած սկսեց հետևել Համոյին ու Վազգենին:

Ախր, ինչպե՞ս չհիանար. իրեն՝ Գառնիկին բավական էր, որ մի նկատողություն անեին, բավական էր, որ «երկու» նշանակեին, ու նա այնպես էր կարմրում, որ ուղղակի քիչ էր մնում լաց լիներ: Այդպիսի օրերին ահ ու դողով էր տուն գնում, իսկ Համոն ու Վազգենը, ոչ միայն չէին ամաչում, չէին վախենում, այլև նույնիսկ ծիծաղում էին: Ի՜նչ սրտոտ տղաներ են:

Այդպես սկսվեց:

— Հի՛, հի՛, հի՛, հի՛,— ծիծաղում է Համոն:

— Հի՛, հի՛, հի՛, հի՛,— ծիծաղում է Վազգենը:

Ու Գառնիկն էլ պոչ դառած քաշ է գալիս նրանց ետևից, նայում, թե ինչպես է Համոն ձիգ տալիս կողքով անցնող աղջկա մազերը, ինչպես է Վազգենը հրում-գցում իրենից փոքրին՝ երրորդ դասարանցուն ու ինքն էլ ծիծաղում.

— Հի՛, հի՛, հի՛...

Գառնիկն ինքն էլ չիմացավ, թե ինչպես մտերմացավ Համոյի ու Վազգենի հետ: Ո՛չ միայն

*դպրոցումն էր նրանց հետ լինում, այլև դասերից հետո։ Նստում էր հաջորդ օրվա դասերը պատրաստելու, մեկ էլ լուսամուտի տակից լսվում էր Համոյի կամ Վազգենի ձայնը.*

*— Գառնի՞կ։*

*— Ո՞ւր,— զգուշությամբ ետ նայելուց հետո, գլուխը լուսամուտից դուրս բերելով, հարցնում էր Գառնիկը։*

*— Հե՛չ,— պատասխանում էին նրան,— մի քիչ ման գանք, խաղանք։*

*— Ախր, էգուց առաջին դասը թվաբ է։*

*— Է՜, ի՞նչ անենք։*

*— Բա որ տետրերն ստուգի՞։*

*— Բան գտավ վախենալու, մե՛նք էլ օրինակները չենք լուծել։ Ստուգում է՝ ստուգի։— Եվ Համոն ու Վազգենը միմյանց հետ հայացքներ փոխանակելով հեգնական ժպիտով նայում էին Գառնիկին։*

*— Վախկո՛տ։*

*Գառնիկը չի ուզում, որ իր նոր ընկերները իր մասին այդքան վատ կարծիք ունենան։ Նա մի րոպե է միայն տատանվում, իսկ հետո շշնջում է.*

*— Լա՛վ, սպասեցեք, գալիս եմ։*

*Բակի կողմը, պատշգամբում մայրը լվացք է անում։ Մոտենալով մորը Գառնիկը հայտնում է։*

*— Ես գնում եմ...*

*— Ո՞ւր, բա դասերդ։*

*— Հենց դասերի համար եմ գնում, է՛լի։ Թվաբանության օրինակները մենակ դժվարանում եմ, գնամ ընկերներիս հետ լուծեմ։*

*— Հա՜, դէ որ էդպես է՝ գնա։*

*Մի քանի ժամից հետո, երեկոյան Գառնիկը տուն է վերադառնում հոգնած, քաղցած։ Որ հարցնես՝ ինքն էլ չի կարողանա խելքը գլխին պատմել, թե ինչով է անցկացրել ժամանակը։ Թափառել են, բարկացրել մի պառավ կնոջ, հետո երբ ինչ-որ մի երիտասարդ ընկել է իրենց ետևից՝ հրհռալով փախել են։ Քարկոծել են մի շան, տրամվայի ռելսի վրա մեխ են դրել, բռնել են մի կատվի ու չարչարել. Գառնիկը խղճահարությունից ասել է. «Բա որ տերը տեսնի», որպեսզի ընկերները բաց թողնեն կատվին, բայց նրա վրա ծիծաղել են՝ «Վախկո՛տ»։ Ու Գառնիկը ինքն էլ խղճահարությունը խեղդած՝ ծիծաղել է, տեսնելով, թե ինչպես է կատուն ճիգ անում քայլել ու գլխկոնձի է տալիս, որովհետև նրա հետևի թաթը վզից է կապված...*

*Այդ բոլորից Գառնիկի գլխում մի բութ, հոգնեցուցիչ աղմուկ է մնացել, ու հիմա նա տուն է գնում հազիվ-հազ ոտները քարշ տալով, բոլորովին ուժասպառ։ Իրենց բակի դռնով ներս մտնելիս մի պահ հիշում է, որ թվաբանության խնդիրներն հարկավոր է լուծել, բայց այնքան է հոգնած, որ այդ միտքը նրան նույնիսկ չի էլ անհանգստացնում։*

2.

*Գառնիկի համար բոլոր օրերը դարձան իրար նման։ Երեկոները նա պառկում էր քնելու հոգնած, դատարկ, բթացած գլխով, առանց դասերը պատրաստելու։ Առավոտները նրա հոգնությունը անցած էր լինում, բայց բթությունը այդպես էլ շարունակվում էր։*

*Այդ էր պատճառը, որ երբ մի օր ընկեր Լևոնյանը տնային առաջադրանքների տետրերն ստուգեց, Գառնիկը փոխանակ կարմրելու, փոխանակ ամոթից մեռնելու, սկսեց ժպտալ։ Այդ օրը չորս հոգի չէին կատարել տնային առաջադրանքները։ Համոն, Վազգենը, Գառնիկը և Ցողիկ անունով մի աղջիկ։*

*Եվ ահա լուռ դասարանում այդ չորսը ոտքի են կանգնում։ Ցողիկը գլուխը կախել է, մինչև ականջների ծայրը կարմրել, հայացքը ցած խոնարհել, աշխատում է ոչ ոքի չնայել...*

*— Ինչո՞ւ դասդ չես պատրաստել, Ցողի՛կ։*

*— Երեկ մենք հյուր էինք գնացել,— շշնջաց Ցողիկը,— ուշ եկանք... հոգնած էի... չհասցրի...*

*Ցողիկն այդ բոլորը շշնջոցով արտասանեց, թվում էր, թե հիմի, հենց հիմի լաց կլինի ամոթից։ Լևոնյանը ուշադիր նայեց աղջկան, ապա ասաց.*

*— Նստիր, Ցողիկ, միայն թե տես, որ այսուհետև այդպիսի դեպքեր չկրկնվեն...*

*Հետո Լևոնյանը դարձավ տղաներին.*

*Այստեղ էր, որ Լևոնյանը զարմացավ, զայրացավ։ Այդ երեք տղաները նայում էին իրար դեմքի ու ժպտում։*

*Իսկ թե ինչ պատահեց Գառնիկի հետ, հետո նա ինքն էլ լավ չէր պատկերացնում։*

*Ինչո՞ւ այդպես ստացվեց։ Ասես նա զրկվել էր որևէ հարցի շուրջը լրջորեն մտածելու հատկությունից։*

*— Ինչո՞ւ չես պատրաստել դասդ,— հարցրեց նրան Լևոնյանը։*

*Հետագայում Գառնիկը աղոտ կերպով հիշում էր միայն, որ Լևոնյանը զայրույթով, վշտահար զարմանքով իրեն էր նայում։ Նրա հաստ, ալեխառն հոնքերը բոլորովին խոժոռ էին դարձել, իսկ ինքը ժպտում էր, պատասխաններ տալիս. «Չեմ սովորել, է՛լի, ինչո՞ւ պիտի ամաչեմ... ի՞նչ եմ արել...» և էլի ուրիշ պատասխաններ, որ ընդհան-*

րապես երբեք չեն կարող դուրս գալ խելքը գլխին մարդու բերանից...

Լեոնյանն ստիպված նրան դուրս արեց դասարանից։

Գառնիկը մինչև դասի վերջը աննպատակ թափառեց միջանցքներում։ Նրա միտքը դադարել էր գործելուց, ասես երազի մեջ լիներ, իրեն զգում էր անհոգ, նույնիսկ թվում էր, թե ինքն ինչ-որ հերոսություն է կատարել։

Վերջապես դասամիջոցի զանգը տվեցին։

Երեք անբաժան ընկերները գտան իրար։

— Հի՛, հի՛, հի՛, հի՛,— սկսեց անմիջապես ծիծաղել Համոն։

— Հի՛, հի՛, հի՛, հի՛,— ծիծաղեց Վազգենը։

Ու Գառնիկն էլ էր ծիծաղում.

— Հի՛, հի՛...

3.

Գառնիկը ճաշում էր և աչքի պոչով նայում հոր կողմը։ Նա վաղուց հորը չէր տեսել այդպես մռայլադեմ, այդպես խոժոռ։

— Հո հիվանդ չե՞ս,— հարցրեց Գառնիկի մայրը։

Ամուսինը գլուխը բացասաբար շարժեց։ Հետո լուռ, անխոս ճաշն ավարտեց և օրվա թերթը ձեռքն առնելով, սկսեց կարդալ։



Երբ հայրիկի տրամադրությունը վատ է լինում, ամբողջ տունը ասես տխրում է։ Տխրում են նույնիսկ անշունչ առարկաները, ամեն ինչ անգունանում է, աղոտանում։ Այդպիսի ժամերին տանը նստելը մինչև անգամ ձանձրալի է։ Լավ կլիներ՝ տանից դուրս գալ, պատճառ բերել, իբր գնում է ընկերների հետ դասերը պատրաստելու և Համոյի ու Վազգենի հետ թափառելու։ Բայց հակառակի նման այսօր եղանակը շատ վատ է։ Դրսում հորդ անձրև է գալիս և, չնայած դեռ շուտ է, սենյակում լույս են վառել, որովհետև երկնքում դիզված ծանր, սև-սև ամպերը ցերեկվա լույսը խավարի են փոխել։

Գառնիկը քիթը հպած ապակուն, նայում է լուսամուտից դուրս։ Փողոցով պառներ են հոսում, ծառերի տերևները դողդողում են անձրևի կաթիլների հարվածներից, հեռվում մեկ-մեկ փայլատակումներ են բռնկվում, և գալիս է հեռավոր ամպրոպի խուլ, հուժկու դղրդյունը։

Եթե հայրիկի տրամադրությունը լավ լիներ, նա կատակներ կաներ, կերգեր, Գառնիկի հետ շաշկի կխաղար, կամ բարձրաձայն որևէ գիրք կկարդար և ժամանակն աննկատելի կանցներ։

— Վերջը չասացիր, թե ինչո՞ւ ես այդպես մռայլ,— ճաշի սեղանը հավաքելուց հետո ամուսնուն դիմեց Գառնիկի մայրը։

Գառնիկը ականջ դրեց։ Իսկապես հետաքրքիր է իմանալ, թե ինչո՞ւ է հայրիկը այդքան տխուր։

— Էսօր ես մի շատ հարգելի, շատ անվանի ուսուցչի հետ զրույց ունեցա,— սկսեց հայրը։ Գառնիկն ականջներն ավելի սրեց։— Դու էլ ես այդ ուսուցչին ճանաչում։ Զանազան առիթներով ես նրան շատ եմ հանդիպել, բայց երբեք այդպես մռայլ, այդպես վշտահար չէի տեսել։ Այդ մարդը հակառակ իր տարիքին, հայտնի է որպես մեկը, որ երբեք հոգնել չգիտե, բայց այսօր ինձ ասում է. «Մերացել եմ, շարքից դուրս եկել»... Եվ այդ բոլորը ո՞ւմ պատճառով, ինչո՞ւ...

4.

Անձրևն այնպես շփշփոցով, այնպես վարար է գալիս, որ ասես բոլորովին միտք չունի կտրվելու։ Փողոցներով լայն-լայն պղտոր առուներ են վազում։ Դեռ երեկոն նոր է սկսվում, բայց արդեն մութ է, և ամենուրեք վառվում են էլեկտրական լույսերը։ Հատ ու կենտ անցորդները, որ հովանոցներով պաշտպանված՝ շտապում են իրենց գործին, զարմանքով նայում են 11—12 տարեկան մի տղայի, որը հորդ անձրևի տակ վա-

զում է գլխաբաց, վազում է շնչասպառ ու լացակումած։

Դա Գառնիկն է։

Նա հաճախ վազքը դանդաղեցնելով թևքերով սրբում է դեմքը, չգիտես՝ արցունքնե՞րից, թե անձրևի կաթիլներից, ապա նորից արագացնում է իր ընթացքը։

Նրա ուղեղում կտոր-կտոր պտտվում են հոր խոսքերը.

— Դու անամոթ, անպատկառ տղա ես։ Դու երջանիկ պիտի համարես քեզ, որ այդպիսի ուսուցիչ ունես։ Գիտե՞ս, թե քանիսին է նա դաստիարակել, նրա աշակերտները, որոնցից շատերը հիմա գիտնական ու բժիշկ են, անվանի մարդիկ, ի՜նչ երախտագիտությամբ են հիշում Լևոնյանին, ի՜նչ հարգանքով են նրա առաջ գլուխ խոնարհում։ Դու ինչպե՞ս ես համարձակվել չհարգել նրան, երբ դու պետք է դողաս նրա կյանքի համար, պահպանես նրա տրամադրությունը։ Դու, որ հայտնի չէ, թե ինչ կդառնաս ապագայում, և դեռ մի հիմար տղա ես միայն։ Ո՞վ գիտե, բոլոր դասերին ես այդպես։ Իսկապես, ի՞նչ պիտի դառնաս դու… Ես քո փոխարեն կարմրում եմ…

Հետո նա հիշեց, թե ինչպես մայրն ասաց.

«Չգիտեմ, թե սրանից հետո ի՜նչ երեսով պետք է դպրոց մտնեմ»։

Ու Գառնիկն այս բոլորը հիշելուց իսկապես սարսափեց։ Նա զգաց, որ ինքը մի ծանր արարք է կատարել։ «Չլինի՞, թե էլ ոչինչ չի կարելի ուղղել»… ակամա մտածեց նա և ավելի սարսափեց։

…Հորդ անձրևի տակ, փողոցով մի տղա է վազում։ Վազում է նա հեծկլտալով, շնչասպառ, հևիհև։

Հիմա նա հիշում է իր ընկերներին, նրանց անմիտ հրհռոցները։ Հիմա նա ամոթով է հիշում, թե ինչպես ինքը ծիծաղել է նրանց հետ այնպիսի դեպքերում, երբ գուցե, ով գիտե, ավելի տեղին կլիներ լաց լինել։ Շատ անգամ ծիծաղել է, որպեսզի ընկերներին դուր գա, նրանց աչքին քաջ երևա։ Վախեցել է իրեն վախկոտ համարեն։



Հիմա նրա սրտում մի անզուսպ կատաղություն է եռում իր ընկերների հանդեպ։ Վաղը նա ցույց կտա այդ Համոյին ու Վազգենին։ Թող հապա փորձեն չարչարել որևէ փոքրիկի, թող փորձեն որևէ դաս խանգարել…

Մի երկար, մի խոր թմրությունից էր ասես նա սթափվել… Ափսոս, ինչքան թանկագին ժամանակ է նա անտեղի վատնել։ Գառնիկը հիմա, չգիտես ինչու, անսահմանորեն խղճում է ինքն իրեն, ինքն իր աչքին թվում է փոքրիկ, անզոր… Բայց ոչի՛նչ, դեռ ուշ չէ, դեռ չի կարելի ամեն ինչ կորած համարել։

Հորդ տեղատարափի տակով վազում էր նա։ Հոգ չէ, որ թրջվել է մինչև ոսկորները, հոգ չէ, որ ոտից-գլուխ ցեխ է դարձել, բայց դրա փոխարեն, քիչ հետո վերադարձի պահին, երբ սիրտը դատարկած կլինի ընկեր Լևոնյանի առաջ, երբ ներողություն կխնդրի նրանից, սիրտը թե՜թև, թե՜թև կլինի, հոգին մաքրված, ինչպես ծառերի այս տերևները, որ դողդողում են անձրևի կաթիլների հարվածներից։

Հորդ անձրևի տակ փողոցով վազում է մի տղա…

# Հողի փոքրիկ աշխատավորները

Ս. ՇԱՂԳԱՄՅԱՆ

Ջնծաղիկի փոխարեն արդեն ժպտում էր կապուտակ մանուշակը, հողը նոր էր սկսել ազատ շունչ քաշել, երբ տրակտորը փորձադաշտ մտավ։

— Ինչ լավ է, տրակտոր ունենք։

— Այլևս հողը բահով չենք փորի,— պատանի բնասերներն այսպիսի բացագանչություններով դիմավորեցին տրակտորի մուտքը։

Տրակտորը ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության նվերն էր դպրոցին։ Կապույտ ու ջինջ երկնքի տակ պատանի բնասերների կատարած ստեղծագործ աշխատանքը բարձր էր գնահատվել։ Նրանք տրակտորի հետ միասին նվեր էին ստացել նաև շարքացան, կոմբայն։

Սուրիկը, որ մինչ այդ ոգևորված զրուցում էր ընկերների հետ, թեթև ոստյունով բարձրացավ մեքենայի վրա և գործի դրեց այն։ Տրակտորը ուրախ աղմուկով առաջ էր շարժվում, ակոսելով սև հողը։ Դպրոցականները հազար քառակուսի մետր վարած հողը բաժանեցին առանձին հողակտորների։ Օղակներն ու ջոկատները հանձնարարություններ ստանալով գործի անցան։ Մնում էր մարգեր պատրաստել և հողին հանձնել սերմերը։ Սերմերի զտման գործը ձմռանն էր արված։

Պատանի բնասերները ելնելով անցյալ տարվա փորձից, որոշել էին եգիպտացորենը ցանել քառակուսի-բնային եղանակով։ Սերմը հիբրիդացրած էր, հողը պարարտացրած։ Մի խոսքով բարձր բերքի համար նրանք ամեն ինչ արել էին։ Փորձադաշտում ցանեցին նաև կարտոֆիլ, ոլոռն, սոխ, ճակնդեղ... Ջերմոցից դաշտ տեղափոխեցին կաղամբի ու պոմիդորի սածիլները։ Մարգերի շուրջը արևածաղիկ տնկեցին։ Վերջացան գարնանային աշխատանքները։

Անցան օրեր։ Կանաչով ներկվեցին դաշտերն ու մարգագետինները։ Կանաչեց նաև Լենինականի երկաթգծի № 40 միջնակարգ դպրոցի փորձադաշտը։ Մշակովի կուլտուրաների հետ միասին նապաստակի ականջների նման դուրս ցցվեցին վայրի խոտերն ու ծաղիկները։ Երեխաներն սկսեցին մարգերը մաքրել մոլախոտերից։

— Ինչքան էլ երիցուկը, տերեփուկն ու զանգակիկը հրապուրիչ լինեն,մենք մարգերը կմաքրենք նրանցից, միևնույն է,— ասում էին երեխաները։

Այո՛, այս հողամասը միշտ էլ բարձր բերք է տվել, վարպետներ աճեցրել։



Նկարում՝ Պատանի բնասերները զրուցում են Գևորգ պապի հետ։
Լուսանկար Մ. Քոչարյանի

Ահա ճակնդեղի մարգի վրա խոնարհվել է Ռոբերտ Հաչյանը։ Նա մերթ ընդ մերթ ձեռքով ետ տանելով ճակատին թափված մազերը, եռանդով պոկում է մոլախոտերը։ Տղային ոգևորել է ճակնդեղի բարձր բերքի հեռանկարը։

— Այս տարի բերքը կգերազանցի անցյալ տարվան,— ասում է նա հողից պոկելով բույսը։

Ռոբերտը մատներով շոշափում է հասուն արմատը, որի վրայից կամաց-կամաց թափվում է հողը։ Անցյալ տարի նա մշակել էր 20 քառակուսի մետր տարածություն, ռեկորդային բերք ստացել։ Ահա թե ինչու Ռոբերտը մեկնեց Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդես։ Նրա հետ ցուցահանդես մեկնեց նաև Գևորգ Վահրամյանը։

Գևորգը դպրոցում հայտնի է, որպես փոքրիկ այգեպան։ Ինչքա՞ն է այս անունը սազում նրան։ Գևորգի այգին փոքրիկ է, մատաղ, ինչպես ինքը։ Սակայն բերքը բարձր է։

Անցյալ տարվա աշնանն էր։ Գևորգը ետ տարավ խաղողի վազի ճյուղերը։ Նրանք ժպտացին

հասուն ողկույզները։ Շիրակի դաշտավայրում մեղրի նման քաղցր խաղող էր հասել։

— Պապիկ ջան, պապի՛կ, պապ մի համ արա, տես ի՞նչ քաղցր է,— ասաց Գևորգը և նրան հյուրասիրեց խաղողի ողկույզով։ Պապիկը մեծ ախորժակով իրար ետևից ճաշակում էր հյութալի պտուղները և ակնոցների տակից նայում թոռնիկին։

— Որ ասում էի քեզանից կանցնե՞մ,— մանկան միամտությամբ ավելացրեց տղան։

Պապիկն էլ է այգեպան, նա է հիմք դրել այս այգուն։ Նա նայում էր թոռնիկին ու հիշում, թե ինչպես, երբ ծառ էր տնկում, Գևորգը ուշի-ուշով հետևում էր իրեն և անվերջ հարցեր տալիս.

— Ե՞րբ կծաղկի, ե՞րբ պտուղ կտա, ինչո՞ւ են տերևները նվազ...

Այժմ Գևորգը այդպիսի հարցեր չի տալիս, նա ամեն ինչ գիտե, իսկական այգեպան է։ Անցյալ տարի հաջող էր նաև ծիրանի բերքը։ Ծիրանի մատաղ ծառի առաջին բերքը երեք կիլոգրամ էր։

Մի տարում մեծացել է Գևորգը, նրա հետ աճել, փարթամացել է նաև այգին։ Այս տարվա բերքն ավելի է առատ։ Հպարտորեն փռվել են խաղողի պտղակալված վազերը։ Գևորգը լավ է աշխատում նաև դպրոցամերձ հողամասում։ Նա պոմիդոր, կաղամբ, սոխ, վարունգ է մշակում։ Սակայն սոխը ամենից լավ աճում է Սվետլանա Մանուկյանի և Մարո Շավարշյանի մարգերում։ Նրանք նույնպես անցյալ տարի ցուցահանդես մեկնեցին, մասնակցեցին պատանի միչուրինականների անդրկովկասյան հավաքին։ Պատանի բնասերները եղան ցուցահանդեսի բոլոր պավիլիոններում։

Այս տարի նրանք ավելի եռանդով են գործի կպել։ Երեխաները սերտ կապ են պահպանում Լենինականի սելեկցիոն կայանի հետ։ Նրանք մասնագետների օգնությամբ կարտոֆիլը ենթարկել են յարովիզացիայի և երկու ցանք կատարել՝ գարնանային և ամառային։ Հողի փոքրիկ աշխատավորները բարձր բերք ստանալու համար ոչ մի ջանք չեն խնայում։ Նրանք լավ գիտեն, որ հողը շատ բարիքներ ունի։ Սակայն եթե նրա վրա աշխատանք չթափես, բարիքներ չի շռայլի։ Հողը աշխատանք է սիրում և առատորեն վարձատրում է աշխատավորին։

# ԱՅԾԸ

(Կատակ)

Ն. ՊԱԼԱՄԱՐՉՈՒԿ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Մի անգամ ուշ երեկոյան,
Խաղում էինք երբ պարտեզում,
Մեկ էլ տեսնենք... Օ՛, զարմանք բան.
Մի սև այծ է մեր կողմ վազում,
Աչքերը մեզ վրա հառում,
Փոքրիկ պոչն է թափահարում:
Չենք հասկանում բանն ինչումն է,
Աղմկում ենք դես-դեն փախչում:
Ուր գնում ենք՝ այդ այծը չար
Հալածում է մեզ անդադար:
Մեկ էլ Տյոման չհամբերեց,
Փայտիկով մի հարված տվեց:
Բայց չարացավ այծն ավելի,
Հետապնդեց նա Տյոմային.
Մենք փորձեցինք օգնել նրան,
Դրա համար կերանք համա՜...

Պոզահարեց նա Վիտյային
Հասակով մեկ փռեց գետնին:
Այդ ժամանակ մեզ ընդառաջ
Եկավ իմ մեծ եղբայրը Քաջ:
Զայրացած էր... փայտը ձեռին
Փորձեց պատժել այդ խենթ այծին,
Պարզեց ձեռքը... Եվ մեկ էլ ի՜նչ,
Լսվեց ուրախ ծափ ու քրքիջ,
Ու այդ պահին հրաշքի պես,
Մի նոր զարմանք պատել էր մեզ:
Չքացել էր այծը, չկա՜ր.
Ա՛յ քեզ հրաշք, ո՛ւր կորավ նա:
Այդ Տոլյան էր մեր դրացի.
Կերպարանք էր առել այծի:

Թարգմ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

# Մենք պատանի լենինյաններ ենք



Հավաքի դրոշը բարձրացված է

Օգոստոսյան շոգը կարծես թե չհացավ, երբ բոլոր կողմերից երևացին պիոներների կենսուրախ շարքերը: Նրանք հրապարակ մտան Արզաքյանի, Նալբանդյանի, Շահումյանի փողոցներից, բայց նրանց ճամփան հեռվից էր գալիս: Պիոներներից շատերը եկել էին Լենինականից ու Կիրովականից, Մարտունուց ու Բասարգեչարից, Հոկտեմբերյանից ու էջմիածնից, Սևանից ու Գորիսից, իսկ ոմանք ավելի հեռվից՝ Մոսկվայից, Սարատովից, Թբիլիսիից ու Բաքվից: Դրանք պատանի պիոներների համամիութենական 5-րդ հավաքի դելեգատներն ու հյուրերն էին, որ քայլերգի տակ մտան հրապարակ: Նրանց ալ փողկապների գույնից կարծես թե ավելի շիկնեցին Լենինի հրապարակի վարդագույն շենքերը:

Նրանց աչքերի առջև, երկնքի կապույտ ֆոնին բարձրանում է մեծ Լենինի արձանը, որի ստվերը քնքշությամբ տարածվում է երեխաների շարքերի վրա:

«Մենք պատանի լենինյաններ ենք», այս է 5-րդ հավաքի նշանաբանը և պիոներները խորը երախտագիտությամբ են նայում այն մարդուն, որի մեծ գործի պատանի զինվորներն են նրանք: Նրանք երդվել են հավատարիմ մնալ Լենինյան պատգամներին, միշտ պատրաստ՝ նրա ստեղծած Կոմունիստական պարտիայի գործի պայքարին:

Ներքևում, կենտրոնական տրիբունի վրա են Հայաստանի Կոմունիստական պարտիայի և կառավարության, ՀԼԿԵՄ Կենտկոմի ղեկավարները: Հավաքի [illegible] ներկա են նաև [illegible] արվեստի [illegible] ներկայացուցիչները:

Մի [illegible] լռություն է տիրում հրապարակում: Տեղի է ունենում հավաքի բացման արարողությունը: Դրոշի բարձրացման պատվավոր պարտականությունը կատարելու համար առանձնանում են Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ստեփանավանի ու Քանաքեռի դելեգացիաների ներկայացուցիչները:

Եվ [illegible] շեփորների ու թմբուկների ռիթմով դրոշը բարձրանում է վեր:

Հավաքը բացված է:

Հայաստանի Կոմունիստական պարտիայի ու կառավարության անունից դելեգատներին ողջունում է ՀԿ Կենտկոմի քարտուղար ընկեր Մարգարյանը:

Այնուհետև ողջույնի խոսքով հանդես են գալիս Լուսավորության մինիստր Ն. Սիմոնյանը և ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար ընկեր Ս. Բաղդասարյանը:

«Մենք հպարտ ենք, որ ապրում ենք ամենաազատ երկրում, մենք ամենաերջանիկ երեխաներն ենք, որովհետև մեր սրտերում կրում ենք անմահ Լենինի [illegible], որովհետև գնում ենք Լենինի դրոշի [illegible]ությամբ՝ այն ուղիով, որ հարթել է Լենինի պարտիան»,— ռեսպուբլիկայի պիոներների և դպրոցականների անունից դելեգատներին ողջունելիս ասաց պիոներուհի Մարգարիտ Գրիգորյանը: Նա երախտագիտության խոսք հղեց պարտիային, այն ջերմ հոգատարության համար, որով ամենուր և ամեն ժամ շրջապատված են մեր երեխաները:

Այնուհետև հրապարակով մեկ հնչում և քաղաքի վրա են տարածվում պատանի պիոներների հանդիսավոր խոստման խոսքերը, որ միաբերան արտասանում են հազար երկու հարյուր պիոներ: Սկսվում է շքերթը: Տրիբունի մոտով անցնում են երջանկությամբ ողողված, պայծառ դեմքերով պիոներները: Նրանք նայում են Լենինի արձանին:

Հրապարակն աստիճանաբար դատարկվում է, բայց հավաքը նոր է սկսվում: Խումբ առ խումբ պիոներները ուղևորվում են դեպի Շահումյանի, Ղուկաս Ղուկասյանի, Ներսոն Ստեփանյանի, Ազիզբեկովի հուշարձանները, պսակներ դնում նրանց վրա:

Իսկ երբ մութն իջավ, հարյուրավոր ջահերի լույսից քաղաքի փողոցները կարծես թե նորից լուսավորվեցին: Հնչում էր պիոներական զրնգուն երգը: Քաղաքի բոլոր ծայրերից ջահակիր շարքերը մտան 26 կոմիսարների անվան այգի:



Հավաքին հրավիրված չեխոսլովակիայի պիոներները ժողովրդական արտիստ Հրաչյա Ներսիսյանի հետ

Իսկ այստեղ նրանց սպասում էր պարը, երգը, կարուսելն ու չքնաղ հրավառությունը: Այսպես ավարտվեց հավաքի առաջին օրը:

Մյուս առավոտ տասնյակ ավտոմեքենաներ հավաքի մասնակիցներին տարան երեխաների սիրելի վայրը՝ Ծաղկաձոր:

Ե՞րբ չի հրապուրել երեխաներին Ծաղկաձորը իր չնաշխարհիկ անտառներով, լեռնային հովասուն օդով, ամռան ո՞ր օրն է այստեղ դադարել մանկական ուրախ կանչն ու երգը, պիոներական շեփորի քաղցրալի ձայնը: Սակայն այս օրերին Ծաղկաձորը մի առանձին հմայք է ստացել: Հավաքը շարունակվում է: Ահա իրար ետևից ելույթ են ունենում պիոներական ինքնագործունեության կոլեկտիվները՝ պարում ու երգում են, արտասանում ու գեղարվեստական մարմնամարզության վարժություններ անում: Ամեն մեկն ուզում է իր շնորհքը ցույց տալ հավաքի օլիմպիադայում, սպորտային խաղերում:

Իսկ շաբաթ օրը Ախտայի լճի վրա վառվեց եզրափակիչ խարույկը: Նրա բոցեղեն լեզուները բարձրանում էին ուղղակի ջրերից: Դա մի հեքիաթային երեկո էր, որ ընդմիշտ կմնա հավաքի մասնակիցների հիշողության մեջ:



Խարույկ լճի վրա



Ջահակիր պիոներները Ստեփան Շահումյանի հուշարձանի մոտ

# ՏՈՒ-104

Հուլիսյան պայծառ օր էր։ Մոսկվայի Տուշինոյի օդանավակայանում հավաքվել էին հարյուր հազարավոր մոսկվացիներ և արտասահմանյան բազմաթիվ հյուրեր։ Նրանք հետաքրքրությամբ նայում էին գեղեցիկ շարքերով կանգնած ինքնաթիռներին։ Շատերի ձեռքին հեռադիտակ կար։ Երևում էր, որ նրանք ինչոր բան են որոնում։ Հանկարծ նրանց ուշադրությունը գրավեց օդանավակայանի կենտրոնում կանգնած արծաթազօծ ու գեղեցկատես մի ինքնաթիռ, որ մինչ այդ նրանք չէին նկատել։ Քիչ հետո այդ մեքենան արևի ճաճանչների տակ փայլփլելով օդ բարձրացավ և կորավ երկնային անհուն լազուրում։

Դա սովետական «Տու—104» նոր մարդատար ռեակտիվ ինքնաթիռն էր, որ կատարում էր իր առաջին փորձնական թռիչքը։

Սովետական նոր տիպի ինքնաթիռի փորձարկումները փայլուն արդյունքներ տվին։ Մի անգամ ինքնաթիռը հարկադրված էր վայրէջք կատարել օդերևութաբանական անբարենպաստ պայմաններում. փոշեխառն հողմը ծածկել էր ամբողջ հրապարակը, և ոչինչ չէր երևում։ Մի կողմից էլ ուժեղ քամի էր փչում։ Անձնակազմին հայտնի էր, որ այդ տիպի ինքնաթիռները նման պայմաններում դեռևս վայրէջք չեն կատարել, բայց չնայած դրան, նա հաջող կերպով ներքև իջավ։

Դա 1955 թվականին էր։

Ինչպես առաջին, այնպես էլ հետագա փորձարկումները ցույց տվին, որ «Տու—104» մարդատար ռեակտիվ ինքնաթիռը հուսալի մեքենա է։

Փորձնական թռիչքներն ավարտվելուց հետո նոր ինքնաթիռը 1956 թվականի մարտի 22-ին Լոնդոն թռցրեց սովետական մի խումբ աշխատողների, որոնք պետք է նախապատրաստեին Ն. Ա. Բուլգանինի և Ն. Ս. Խրուշչևի՝ Անգլիա կատարելիք այցելությունը։

«Տու—104» ինքնաթիռը կատարելով իր առաջին ճանապարհորդությունը, Մոսկվայից Լոնդոն հասավ 3,5 ժամում և իր վրա գրավեց լոնդոնցիների ուշադրությունը։

Անգլիական մամուլն սկսեց իր ընթերցողներին ծանոթացնել «Տու—104» ինքնաթիռի հետ։ «Դեյլի մեյլ» լրագրում մարդիկ կարդում էին. «Ռուսաստանը զարմացրեց Արևմտյան աշխարհը, ցուցադրելով «Տու—104» ինքնաթիռը՝ ավելի կատարյալ մի ինքնաթիռ, քան այն բոլորը, որ մենք վերջին երեք տարում տեսել ենք Անգլիայում կամ Ամերիկայում»։ Իսկ անգլիական ավիացիայի գլխավոր մարշալ Ֆիլիպ Ժուբեր դե լա Ֆերտը հեռուստատեսական ցանցի թղթակցին ասաց. «Ռուսները նման ինքնաթիռների կառուցման գործում մեզանից շատ առաջ են անցել, և այդ չափի ռեակտիվ շարժիչներ մենք չունենք»։ «Դեյլի էքսպրես» լրագրում հայտնի ինքնաթիռ

փորձարկող Ռոտերտոնը հանդես եկավ մի հոդվածով, որտեղ ասում էր. «Ես, ինչպես նաև մըյուս մասնագետները, դեռևս զարմանքից չենք կարողանում ըսթափվել այն բանից հետո, երբ մեզ հաջողվեց վայրկենական հայացք նետել ռուսական ավիացիայի հզորության վրա»։

Սովետական Միության Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ա. Բուլգանինի և Գերագույն Սովետի Նախագահության անդամ Ն. Ս. Խրուշչևի՝ Անգլիայում գըտնըվելու ժամանակ ամեն օր առավոտ Մոսկվայի Վնուկովոյի օդանավակայանից Լոնդոն էին թըռչում մի քանի «Տու—104» ինքնաթիռ։ Նույն օրը ճաշից հետո նրանք վերադառնում էին Մոսկվա, իրենց հետ բերելով լուսանկարներ ու նյութեր՝ մեր թերթերում տպագրելու համար։

«Տու—104» մարդատար ռեակտիվ ինքնաթիռը շատ արագընթաց մեքենա է և թռչում է ավելի քան 10 կիլոմետր բարձրության վրա։ Նրա սովորական արագությունը կազմում է 800 կիլոմետր մեկ ժամում։ Բայց նա կարող է ավելի արագ թռչել. այդ դեպքում վառելանյութը ավելի քիչ է ծախսվում։

Ինքնաթիռն ունի երկու հզոր ռեակտիվ շարժիչ, որոնք հնարավորություն են տալիս արագորեն վեր բարձրանալ։ Մեքենան կարող է թռչել նաև միայն մեկ շարժիչ աշխատեցնելով։ Այդ դեպքում թռիչքի բարձրությունը կլինի 5 կիլոմետր։

Ամենաարագ թռիչքի ժամանակ էլ կաբիններում այնքան հանգիստ է, որ եթե մատիտը ուղղահայաց դրված լինի սեղանի վրա, ապա չի ընկնի։ Ինքնաթիռի արագ թռիչքը ուղևորներին հնարավորություն է տալիս օդում երկար չմնալ և չհոգնել։ Եթե այդ ինքնաթիռով Վլադիվոստոկի բընակիչը առավոտյան ուղևորվի դեպի Մոսկվա, ապա նա կարող է մայրաքաղաքում զբոսնելուց հետո երեկոյան գնալ Մեծ Թատրոն և լսել որևէ օպերա։ Խաբարովսկի բնակիչը եթե արևածագին թռչի դեպի Մոսկվա, ապա մինչև տեղ հասնելը կտեսնի արևի ծագումը։

«Տու—104» ինքնաթիռն ունի ռադիոդեկավարման, ռադիոլոկացիոն և ռադիոկապային առավել ժամանակակից սարքավորում։ Կա նաև հատուկ սարքավորում, որը հնարավորություն է տալիս վայրէջք կատարել օդերևութաբանական բոլոր պայմաններում, գիշեր ու ցերեկ։ Ինքնաթիռն ամբողջովին կառուցված է մետաղից և ճոխ կահավորում ունի։ Թռիչքի ժամանակ ուղևորն իրեն ըզգում է շատ հանգիստ, ինչպես փափուկ վագոնում։ Ինքնաթիռը կարող է փոխադրել 50 ուղևոր, իսկ տուրիստական նպատակներով օգտագործելիս՝ 70, չհաշված իրերը։ Ինքնաթիռում կա 28 տեղանոց ընդհանուր կաբին, 9 տեղանոց երկու և 6 տեղանոց մեկ սալոն։ Բացի այդ, կան՝ ձեռքի ծանրոցների և բեռների բաժանմունքներ, բուֆետ, խոհանոց, հանդերձարան։ Մարդիկ ուղևորության ժամանակ կարող են ըստանալ սառը և տաք ճաշ։

Ուղևորների համար ստեղծված են հիանալի հարմարություններ։ Բազկաթոռների վրա ոչ միայն կարելի է նստել, այլև դրանք հարմարեցնել այնպես, որ կիսապառկած վիճակում հնարավոր լինի հանգստանալ։

Հերմետիկ կաբինը անհրաժեշտ պայմաններ է ապահովում ամբողջ թռիչքի ընթացքում։ Տաս հազար մետր բարձրության վրա ուղևորները թթվածնից չեն օգտըվում, որովհետև ներսում օդի ճնշումը նույնն է, ինչ որ երեք հազար մետր բարձրության վրա։ Ամեն մի ուղևոր ցանկության դեպքում կարող է օգտվել անհատական թթվածնային սարքից։

«Տու—104» ինքնաթիռը բացառապես կառուցված է հայրենական նյութերից։ Հեղինակն է Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, սովետական ավագագույն կոնստրուկտոր Անդրեյ Նիկոլաևիչ Տուպոլևը։

Այժմ սովետական ավիացիոն արդյունաբերությունը սկսել է «Տու—104» ինքնաթիռի սերիական արտադրությունը։

Լուսանկարը վերցված է «Սովետսկի Սոյուզ» ամսագրից



# ՄՈՒՇԵՂՆ ՈՒ ՄԱՔՐՈՆ

Ն. ԶԱՐՅԱՆ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

*1.*

Կար մեր գյուղում մի ֆաչ տղա:
Մի Մուշեղ կար մեր գյուղում:
Մեզ, փոքրերին, սիրում էր նա,
Դուդուկ և հոլ նվիրում:

Նա էր սարքում մեզ նոր խաղեր,
Հարթում վեճերը բոլոր:
Նա մեզ համար և ընկեր էր,
Եվ անաչառ դատավոր:

Թև էր բույլին և աղքատին,
Չէր հարցընում փոքր ու մեծ:
Մեկ էլ տեսար՝ Շամամ տատին
Հեռվից, նվա՜ղ, ձայն տվեց.

— Մուշեղ, մատա՜ղ, էս իմ
բաղած
Հալևորը քեֆ չունի,
Արի մեր դանը տար ջաղաց,
Մեռնե՜մ անուշ անունիդ:

Մեկի դանն էր ջաղաց տանում,
Ջյունը մաքրում կտուրի.
Մեկի սելն էր ցեխից հանում՝
Միշտ երգելով սրտալի:

Գյուղում սիրում էինք նրան
Մեծ ու պստիկ միասին:
Պանրի-պուլկի Մաքոն միայն
Կանչում էր իր Մինասին.

— Է՜յ, տո՛ւն արի, մանրապնե՛ղ,
Ի՞նչ գործ ունես դրանց հետ:
Ուռենց լոթին քո բայը չէ,
Ոչ էլ ուսյալ վարժապետ:

Տուն էր գնում տղան լալով՝
Թողած մեր խաղը բերի:
Մուշեղն ասում էր ժպտալով.
— Պետք է հարգել մեծերին:

Բայց դուք սիրե՛ք արդարություն,
Էլ չեմ ասում ուրիշ բան:
Այնպե՛ս արեք՝ մարդը մարդուն
Լինի թիկունք ու պաշտպան:

**2.**

Մեծացել էր Մուշեղն արդեն:
Բեղերը՝ ծիլ, կուրծքը՝ լայն:
Ասում էին՝ պիտի կարգեն
Կալից հետո՝ էս աշնան:

Խոսում էինք մենք այդ մասին՝
Նստած դեզի ետևում,
Եվ, տեսնելիս «հարսնացուին»
Մեծ հարգանքով բարևում:

Շատերն էին թաքուն սիրել
Տեր-Սահակի աղջըկան:
Նրա համար գովք էր գրել
Մեր գյուղացի մի գուսան.

«Շուշոն ելե՝ կերթա այգին,
Կշնկշնկա հովի պես,
կշողշողա շուշփեն*) հագին
Սինամ հավքի թևի պես:

Շուշոն ելե՝ կերթա մարագ,
Գյուղն ետևեն կտանի:
Ծամբելը հաստ, մեջքը՝ բարակ,
Կեռ ունքը մարդ կսպանի»:

Գյուղն սպասում էր անհամբեր
Նրանց արդար պսակին:
Խոսում էին ջահել ու ծեր.
— Հալա՜լ է, ես՝ իմ հոգին:

Պանրի-պուլկի Մաքոն միայն
Մրթմրթում էր ինքնիրեն.
— Խելա՛ռ տերտեր, խաս
աղջըկան
Շանը տվեց անօրեն:



Մենք շատ էինք վիրավորվում
Այդ խոսքերից անարդար:
«Պանրի-պուլի՜կ» էինք բոռում
Ու շպրտում պարսաքար:

— Մի՛ նեղացնեք Մաքո-քե-
ռուն,—
Խոսեց Մուշեղը մի օր.—
Չար է միայն նրա լեզուն,
Խեղճ է հոգին, չունևոր...

Հայտնի էր մեզ Պուլկի հոգին:
Միշտ կովարար և խռով.
Ատում էր նա մեր Մուշեղին
Մի հասարակ պատճառով:

Մաքոն ուներ երգչի համբավ
Քեֆերի մեջ մեր գյուղի:
Բայց երբ Մուշեղը մեծացավ,
Թեքվեց աստղը Մաքոյի:

Հենց որ Մաքոն հողան մտներ,
Մեկը ծոծրակն էր քորում:

---

* *Շուշփա — մետաքսեղեն:*

— Մուշեղի պես հրգիչ, աղբե՛ր,
Վայ թե չկա աշխարհում:

Գունատվում էր Մարո-հեոին,
Քրմնչալով գնում տուն,
Եվ թափելով սրտի լեղին՝
Ծեծում կնոջն ու որդուն:

3.

Անցան հինձի օրերն արագ,
Բերքը դիզված էր կալում:
Շահնան[1] շրջում էր կալ, մարագ.
Հարկը չափում ու տանում:

Մոլորվել էր Մարո-հեոին.
Բերքը պակաս, լեզուն՝ լալ:
Նա չէր կարող հարկառուին
Տարվա տուրքը լրիվ տալ:

Ուներ միայն մի զույգ լծկան,
Տանում էին տուրքի դեմ:
Նա մռնչաց գոմշի նման.
— Ձե՛մ տա, գլուխ կջարդեմ:

Հարկահանը կանչեց իսկույն
Մի բավարեղ ոստիկան,
Կապկրպեցին խեղճ գյուղացուն
Հրամանով տերության:

Ոտքերի տակ ծեծում էին
Ճիպոտներով մաշրենու:
«Վա՜յ» էր կանչում Մարո-հե-
ոին...
Ո՞վ սիրտ կաներ օգնելու:

Մեջտեղ նետվեց Մուշեղն աճա,
Հասակը ձիգ մի բարդի.
— Ի՞նչ եք ծեծում, է՜յ. մարդ է
սա,
Մեղք է, քողե՛ք, էֆենդի[2]:

Ոստիկանը չար ծիծաղեց,
Խորը ջնջեց կեռ քթով,

[1] Շահնա կոչվում էր հարկահավաքը, որ կալի ժամանակ չափում էր հացահատիկը և ութից մեկը վերցնում իբրև պետական հարկ։

[2] էֆենդի — պարոն։

Եվ Մուշեղի դեմքը դաղեց
Արյունլվա ճիպոտով:

— Հայ-հա՜յ,— գոչեց Մուշեղը
քաջ,
Քաշեց մահակը թեղի
Եվ տապալեց ժամտան առաջ
Ոստիկանին կատաղի:

Նա արձակեց Մարո-հեոու
Ձեռք ու ոտքերն արնածոր:
Եվ բարկության շողն աչքերում՝
Քայլերն ուղղեց դեպի ձոր:

Ես ջաղցի մոտ հասա նրան,
Լալիս էի սարսափած:
Գրկեց ավագ եղբոր նման,
Ինձ փայփայեց և ասաց.

— Սիրի՛ր արդար ազատություն,
Էլ չեմ ասում ուրիշ բան:
Այնպե՛ս արա. մարդը մարդուն
Լինի թիկունք ու պաշտպան:

Իսկ Շուշանին, երբ տեսնես.
Ասա՝ ինձ լավ եմ զգում:
Բան էր, ասա՝ եղավ էսպես...
Թո՛ղ ինձների իր սրտում:

Ասա՝ թակարդ ընկնողը չեմ,
Ինձ մեր սարերը-պաշտպան:
Նրան շուտով կփախցրնեմ,
Կառնեմ, կերթամ Ռուսաստան:

4.

Պարզ երկինքը մթնեց հանկարծ:
Մեր գյուղն արագ զորք մտցրին:
Ասկյար[3], գզիր[4] սարերն ընկած՝
Փնտրում էին Մուշեղին:

Ուշաթափվեց Շուշոն թշվառ,
Հալվեց, ընկավ անկողին:
Մենք մեր խմբով գնացինք սար,
Նամակ բերինք Շուշոյին:

Էլ ի՛նչ հարսնիք, ի՛նչ կերու-
խում...
Հացը դարձել էր լեղի:
Կալատեղից էլ չէր լսվում
Գովքը սիրուն Շուշոյի:

«Շուշոն ելե՝ կերթա մարագ,
Գյուղն ետևեն կտանի,

[3] Ասկյար — զինվոր։

[4] Գզիր — Գյուղական կատարածու



Ծամբելը հաստ, մեջքը բարակ,
Կեռ ունքը մարդ կսպանի»:

Անցան աշնան օրերն ամպոտ:
Եկել էր ձյունն առաջին:
Գյուղում հանկարծ ընկավ մի
բոթ.
— Ա՜խ, բռնել են,—ասացին:

Տղան եկել է գիշերով
Հարսնացուին տեսության,
Մատնել է նա...



Մատնե՞լ է... ո՞վ:
— Պուլկի-Մարոն, էդ հուդան:

Ժամի բակում հավաքվեցին
Ավագները գյուղական:

Ահա բերում են Մուշեղին
Երկու խոժոռ ոստիկան:

Նա էլ եկավ՝ Պուլկի-Մարոն՝
Առաջն ընկած ասկյարի:
Եվ նորից իր հաստլիկ մատով՝
— Սա էր,— ասաց,— էֆենտի:

Նայեց Մուշեղն իր մատնիչին,
Սրտի խորքից «ա՜խ» քաշեց:
Աչքերը սև կայծկլտացին
Եվ շատ կամաց նա խոսեց.

— Տվի՞ր տուրքդ, Մարո՛-քեռի...
Բայց ես մի բան քեզ կասեմ.
Երբ օրը գա, ճիպոտներից
Ես քեզ նորից կազատեմ...

Այսպես խոսեց քաջ պատանին՝
Աչքերի մեջ կովի խանդ:
Մնաս բարով ասեց գյուղին
Եվ ժպտալով գնաց բանտ:

5.

Անցան օրեր և տարիներ:
Եկավ գարունը կրկին.
Փախավ բանտից Մուշեղը մեր,
Տարավ սիրուն Նուշոյին:

Գնաց այնտեղ, երազ-Բաքու,
Հասավ սրտի փափագին.
Բանվոր դառավ նավթահանքում
Գյուղի կտրիճ պատանին:

Տեսավ այնտեղ նոր կյանք, նոր
ցավ
Նրա խիզախ պարզ հոգին:
Եվ նա Բաքվում զինվոր դարձավ
Շահումյանի բանակին:

Բայց այս անգամ մահակի տեղ
Գնդացիրով նա զինվեց,
Կռվեց նա հին աշխարհի դեմ
Եվ Բաքվի տակ սպանվեց:

Մնաց միայն իմ հուշերում
Նրա պատգամն անվեհեր,
Որ ես ահա ձեզ եմ բերում,
Իմ սիրելի մանուկնե՛ր:

Սիրե՛ք արդար ազատություն,
Էլ չեմ ասում ուրիշ բան:
Այնպե՛ս արեք—մարդը մարդուն
Լինի ընկեր ու պաշտպան:



# Ինչպես կաշին կոշիկ դարձավ

Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ



Մայրիկդ քեզ համար նոր կոշիկներ է գնել։ Հագել ես կոշիկներդ, քայլում ես սենյակում, պտտվում, ապա վերցնում ես պայուսակդ և գնում դպրոց։

Իսկ դու գիտե՞ս, թե ինչպե՞ս են կարվել քո կոշիկները, ինչպե՞ս են աշխատել գործարանում, որ լավորակ լինեն դրանք. քթամասը չծակվի, կրնկամասը չծալվի և կոշտուկներ չառաջանան ոտքերիդ վրա։



Երևանի Կոշիկի երրորդ ֆաբրիկան կոշիկներ է կարում միայն մանուկների համար։

Ահա գործարանի բակը. ընդմիջման ժամն է. ոմանք գնում են նախաճաշելու, ոմանք զբոսնում, հանգստանում են, ինչպես դուք դասամիջոցին։

Բայց սուլում է շչակը. այդ նշանակում է ընդմիջումը վերջացավ։ Ո՛չ ոք չմնաց։ Կարգն այդպես է. հանգստանալիս՝ հանգստացիր, աշխատելիս՝ աշխատիր...

Մենք գնում ենք ձևման ցեխը։ Սրահում միմյանց ետևից մեքենաներ են շարված. մարդիկ աշխատում են արագ-արագ, խորասուզված աշխատանքի մեջ։ Բայց այն մեկը, որ բոլորից արագ է աշխատում, հայտնի բանվորուհի է, նրան բոլորն են ճանաչում։ Նա նամակներ է ստանում հայտնի վարպետներ՝ Լիդիա Կարաբելնիկովայից, Ալեքսանդր Չուտկիխից... Մարիա Թումանյանը վաղուց կատարել է իր մի քանի տարվա պլանները։ Հիմա 1960 թվականի հաշվին է աշխատում։ Գնանք նրա մոտ...



Կտրիչը նրա ձեռքում աշխատում է արագ-արագ, մերթ ցատկում է, մերթ՝ սահում, պտտվում և գունավոր կոշիկների, ատաղի համար սպիտակ քաթանի կտորներ լցնում շուրջը։

— Տեսե՛ք, տեսե՛ք, ի՞նչ փայլուն կաշի է...

— Այո, փայլուն է, սև լաքի այդ կաշվից աղջիկների համար գեղեցիկ կոշիկներ կկարեն ֆաբրիկայում, գնանք նրա հետևից։

Ձևած երեսացուն գցեցին «Ֆորտունա» կոչվող մեքենայի տակ։ Մեքենայի սրիչը տաշեց եզրերը, ետ ծալեց և ծանր գլանով ճզմեց, հարթուկեց։

— Իսկ որտե՞ղ են ձևում կոշկի ներբանները,— առանց ներբանի կոշիկ չի լինի։

— Ներբանները ձևում են կոշտ կաշվի ցեխում, այնտեղ նույն մեքենաներն են, բայց ավելի ու-

ժեղ։ Այնտեղ ձեւում են միայն կոշկի ներբանները, կրնկամասն ու քթամասը, հետո տաշում են ներբանը, որ ճկուն լինի, չդժվարացնի քայլելը։

— Իսկ ո՞րտեղ են կարում կոշիկները։

— Կոշիկները կարում են ֆաբրիկայի կարող ցեխում, գնանք այնտեղ։

Այս, մեծ ու լուսավոր սրահում ինչ մեքենաներ ասես կան... Բանվորներից ոմանք նստել են կարի մեծ մեքենաների առաջ, ոմանք՝ աշխատասեղանների, ուրիշները՝ հաստոցների և կտրող-տաշող մեքենաների առջև։

Պահեստից բերում են համարակալված կոշկի երեսացուները, ներբանները, միջուկը, աստառը, կրնկամասն ու քթամասը։

Հիմա ենթամասի վարպետ ընկեր Ասլանյանը գործի կդնի օգնականներին։ Ահա նա մոտեցավ էլեկտրական սարքավորմանը և ձգեց բռնակը։ Թեթև աղմուկ լսվեց։ Նստած բանվորների կողքով, պիրկ ձգված լարերի վրայով մեկը մյուսի ետևից սկսեցին վազել թիթեղյա փոքրիկ նավակները՝ իրենց հետ տանելով կոշկի մասերը։

— Ի՜նչ շատ են, մեկ, երկու, երեք...

— Չէ՛, բարեկամս, բոլորը միանգամից չես հաշվի, լավ է հարցնես բանվորներից մեկին, թե քանի՞ նավակ կա կոնվեերի վրա, նա քեզ կպատասխանի. «665»։

— Տեսե՛ք, տեսե՛ք, իմ ընտրած կաշվից ինչ գեղեցիկ երեսացուներ են դուրս եկել, վրան համար կա՝ 222։ Այն բանվոր քեռին բռնեց, երեսացուին միացրեց աստառը, մեքենայով կարեց և գցեց նավակի մեջ։

— Հաջորդ բանվորը շրջեց աստառը, երեսացուի և աստառի միջև տեղավորեց քթամասը և դարձյալ նավակի մեջ նետեց։ Իսկ այն մորաքույրը, որ ձեռքին մուրճ ունի, իսկ աշխատասեղանի վրա՝ փոքրիկ արկղիկներում տարբեր չափսի մեխեր, երեսացուն ամրացրեց կաղապարի վրա։

Ապա էլեկտրական մուրճիկով, որ հարթուկի դեր է կատարում, հարթուկեցին երեսացուի ծայրերը, որ ամուր ու կոկ նստի ներբանը, իսկ «Ցրեզեր» կոչվող մեքենայի կտրիչը կտրեց, տաշեց ներբանի ավելորդ մասերը, շտկեց ու մաքրեց։

Ցրեզերագործ Կարապետ քեռու ձեռքով հարյուր հազարավոր զույգ կոշիկներ են անցել։ Աչքը մեքենայի կտրիչին, ականջը նրա ներդաշնակ աղմուկին, Կարապետ քեռին արագ-արագ շարժում է ձեռքերը, իսկ մեքենան լսում է նրան ու ենթարկվում նրա կամքին։

Այստեղ յուրաքանչյուր մարդ լավ գիտի իր աշխատանքը, ոչ ոք ետ չի մնում, թե մեկը ետ մնաց, ենթամասի վարպետն իսկույն կմոտենա նրան, կպարզի վթարի պատճառը և կօգնի։

Նորից նավակներով վազում են կոշիկները, որը դեռ չի կարված, որը թերի է, որն էլ արդեն պատրաստ է։

— Ահա և 222-ը, արդեն պատրաստ է։

— Ապա ձեռքդ ներս տար, այդպիսի կոշիկը կարող է տրորել ոտքդ, գուլպադ պատռել։ Դրա համար սպիտակ «մեշեն» կոչվող կաշվից միջուկ են անցկացնում, որ ոչ ոտքդ քերծի, ոչ էլ գուլպադ պատռի ու անհանգստացնի քեզ։

Ձեռքից ձեռք անցնելով, կոշիկները կեղտոտվել են ու կորցրել իրենց տեսքը, այսպես նրանց ոչ ոք չի հավանի։

Իսկապես, տեսե՛ք, 222-ն ինչի՞ է նման։ Բայց վշտանալու կարիք չկա.

Հապա այս կողմ նայիր՝ կոշիկների մի ամբողջ բլուր է, կարմիր, կանաչ, սև, սպիտակ, մոխրագույն։ Մեկը կապով է, մյուսը՝ անկապ, երրորդը փայլուն կոճակներ ունի։

Բանվորուհիները փափուկ, մաքուր կտորով վերցնում են կոշկի վրայի փոշին, մաքրում, ապա «փայլով» փայլեցնում, խոզանակով մաքրում, անցկացնում կոշկակապերը, կոճակները կարում և ներբանի վրա խփում ոտքի համարը։

Բայց դեռ խանութ չեն տանում։

Գործարանում մի կարգ կա, որքան էլ գեղեցիկ և որակյալ լինի կոշիկը, նա ցեխից դուրս չի գա, մինչև ուղեգիր չստանա։

Խոտանողը վերցնում է կոշիկը, նայում, շուռ ու մուռ տալիս, պակասություն չգտնելով, կոշկի ներսը՝ քաթանե աստառի վրա խփում է իր երկարավուն կնիքը։ Այդ նշանակում է՝ «Ազատ ես, բարեկամ, բարի ճանապարհ քեզ»։

Պատրաստի կոշիկները դնում են ստվարաթղթի տուփի մեջ, վրան գրվում է կոշկի տեսակը՝ ոտքի համարն ու կոշկի արժեքը։ Հետո տուփերը դասավորում են արկղերի մեջ և ավտոմեքենաները կոշիկներով լի արկղները տանում են կայարան, իսկ այնտեղից՝ ամեն քաղաք, ամեն տուն, ուր մանուկներ են ապրում։



# ՊԻՆՈՔԻՈՅԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

*Կ. ԿՈԼԼՈԴԻ*

*Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

Դուք կարդացել եք երևի Ալ. Տոլստոյի «Բուրատինոյի արկածները կամ ոսկե բանալին»: Այդ գրքի նախաբանում Տոլստոյը հիշատակում է Պինոքիոյի արկածների մասին, որ իտալական գրող Կոլլոդին է գրել, օգտագործելով ժողովրդական բանահյուսության մեջ Բուրատինոյի՝ փայտե տիկնիկի մասին եղած հեքիաթները:

Տպագրում ենք մի հատված «Պինոքիոյի արկածներից»:

*Արդեն կեսուն րոպե էր, ինչ էշը ջրի տակ էր գտնվում, երբ գնողն ինքն իրեն խոսելով ասաց.*

*— Հիմա իմ խեղճ կաղ էշը արդեն, ինչպես հարկն է, խեղդված կլինի: Դե դուրս քաշենք նրան և կաշվից պատրաստենք մեր գեղեցիկ թմբուկը:*

*Եվ սկսեց քաշել պարանը, որի մի ծայրը կապել էր էշի ոտքերին: Քաշեց, քաշեց, քաշեց և վերջապես դուրս հանեց… ապա կռահեք, թե ի՞նչ: Սատկած էշի փոխարեն մի կենդանի բուրատինո, որը օձաձկան նման գալարվում էր:*

*Տեսնելով փայտյա բուրատինոյին, խեղճ մարդը կարծեց, թե երազի մեջ է: Նա բերանը բաց, աչքերը լայն բաց արած մնացել էր կանգնած:*

*Քիչ հետո սթափվելով իր ապշությունից, ասաց.*

*— Իսկ իմ էշը, որին ես ծովը նետեցի, ո՞ւր է…*

*— Այն էշը ես եմ,— ծիծաղելով պատասխանեց բուրատինոն:*

*— Դո՞ւ:*

*— Այո, ես:*

*— Ա՜խ սրիկա՛, չլինի՞ թե դու ուզում ես ինձ ձեռ առնել:*

*— Ձեզ ձեռ առնե՞լ. ընդհակառակը, հարգելի աղա, ես ձեզ հետ բոլորովին լուրջ եմ խոսում:*

*— Բա այդ ինչպե՞ս կարող էր պատահել, որ դու մի քիչ առաջ էշ էիր, իսկ այժմ ջրի մեջ դարձար փայտյա բուրատինո…*

*— Ծովի ջրի ազդեցության տակ այդպիսի բան պատահում է: Ծովը սիրում է այդ կարգի կատակներ անել:*

*— Լավ իմացիր, բուրատինո, դու մի կարծիր, թե ես քո ծիծաղի առարկան կարող եմ լինել: Վա՛յ քեզ, եթե ինձ համբերությունից հանեցիր:*

*— Լավ, աղա ջան, ուզո՞ւմ եք իսկական պատմությունն իմանալ, արձակեք իմ այս ոտքը, ես ձեզ կպատմեմ:*

*Այդ միամիտ ու շփոթված գնորդը, որ մեծ հետաքրքրությամբ ուզում էր իմանալ իսկական պատմությունը, իսկույն ևեթ արձակեց պարանի կապը և Պինոքիոն, ազատության մեջ գտնվող թռչունի նման, սկսեց պատմել այսպես.*

*— Իմացեք, ուրեմն, որ ես փայտյա մի բուրատինո էի, ինչպես և այսօր եմ: Բայց արդեն այնտեղ էի հասել, որ էն էր հա, շատ-շատերի պես մի իսկական տղա պիտի դառնայի, երբ իմ սովորելու սեր չունենալու և վատ ընկերներին լսելու պատճառով տանից փախա… Եվ մի գեղեցիկ օր, երբ արթնացա, տեսա, որ երկար-երկար ականջներով ու պոչով էշ եմ դարձել… ինչ ամոթալի էր դա ինձ համար… այնքան ամոթալի, սիրելի աղա, որ օրհնված սուրբ-Անտոնիոն այդքան*

թող չամաչեցնի նույնիսկ ձեզ։ Ինձ տարան ավանակների շուկան վաճառելու։ Այնտեղ մի ձի վարժեցնող կրկեսի դիրեկտոր գնեց ինձ. նա, որը որոշեց ինձ հայտնի պարող և օղակների միջով թռչող դարձնել։ Բայց մի երեկո, ներկայացման ժամանակ թռչելիս՝ այնպես շրմփալով վայր ընկա, որ երկու ոտքիցս էլ կաղ մնացի։ Այն ժամանակ դիրեկտորը մի կաղ էշի հետ, ինձ նորից ուղարկեց շուկա, որտեղ էլ դուք ինձ գնեցիք։

— Դժբախտաբար՝ այո։ Եվ քեզ համար քսան սոլդո վճարեցի։ Իսկ այժմ ո՞վ է ինձ վերադարձնելու իմ քսան սոլդոն։

— Իսկ ինչո՞ւ էիք ինձ գնել։ Դուք ինձ գնել էիք, որ իմ կաշվից թմբուկ պատրաստեք... թմբուկ...

— Դժբախտաբար՝ այո։ Իսկ հիմա որտեղի՞ց կարող եմ ուրիշ տեսակի կաշի ճարել...

— Միք հուսահատվի, աղա։ Այս աշխարհում այնքա՜ն ավանակներ կան...

— Ասա ինձ, հանդուգն սրիկա, քո պատմությունը հենց այստեղ էլ վերջանո՞ւմ է։

— Ո՛չ,— պատասխանեց բուրատինոն,— դեռ մի երկու խոսք էլ կա, որից հետո կվերջանա։ Գնելուց հետո, դուք ինձ բերիք այստեղ՝ սպանելու նպատակով։ Բայց հետո, հանուն մարդասիրության, դուք գերադասեցիք վզիցս քար կախել և նետել ծովի հատակը։ Այդ ազնիվ զգացմունքը ձեզ մեծ պատիվ է բերում, որի համար ես ձեզանից հավիտյան շնորհակալ եմ։ Սակայն սիրելի աղա, այս անգամ ձեր հաշիվներն արիք առանց ջրահարսի։

— Իսկ ո՞վ է այդ ջրահարսը։

— Իմ մայրս է, որը նման է այն բոլոր բարի մայրերին, որոնք իրենց տղաներին մեծ հաջողություն են ցանկանում։ Նրանք երբեք աչքաթող չեն անում նրանց, միշտ օգնում են ամեն մի դժբախտության ժամանակ, եթե նույնիսկ այդ տղաներն իրենց թեթևամտության և վատ վարքի պատճառով մորը լքեն։ Այն էի ասում, ուրեմն, երբ բարի Ֆեյան տեսավ ինձ խեղդվելու վտանգի մեջ, իսկույն ևեթ մոտս ուղարկեց ձկների մի վտառ։ Նրանք կարծելով, թե ես իսկապես սատկած էշ եմ, սկսեցին ուտել ինձ։ Եվ ինչպես էին կտոր-կտոր պոկում։ Ես երբեք չէի հավատա, որ ձկներն ավելի ըկլիկ կլինեն, քան երեխաները։ Նրանցից մեկն ականջներս կերավ, մեկը՝ դունչս, մեկը՝ վիզս ու բաշս, մեկը՝ առջևի ոտքերիս մաշկը, մյուսը՝ մեջքիս մազերը... իսկ այդ ձկների մեջ էլ մի շատ քաղցրակեր ձկնիկ կար, որն արժանի համարեց նույնիսկ պոչս ուտել։

— Այսօրվանից հետո,— սարսափած ասաց գնորդը,— երդվում եմ այլևս ձկան համ չտեսնել։ Ես անչափ կզզվեի, եթե մի տապակած արքայաձկան կամ փրփրաձկան փորում էշի պոչ գտնեի։

— Ես էլ եմ ձեր կարծիքին,— ծիծաղելով պատասխանեց բուրատինոն։— Վերջապես դուք պետք է իմանաք և այն, որ երբ ձկները ինձ ծածկող ամբողջ ավանակային կեղևը կերան՝ վերջացրին, անցան ոսկորներիս... կամ ավելի ճիշտն ասած՝ անցան փայտին, որովհետև, ինչպես տեսնում եք, ես պատրաստված եմ շատ ամուր փայտից։ Մի քանի անգամ կրծելուց հետո, այդ ըկլիկները անմիջապես գլխի ընկան, որ փայտն իրենց ատամների համար հարմար միս չէ։ Այդ անմարսելի կերակուրից սրտախառնություն զգալով, ոմանք այս կողմը գնացին, ոմանք էլ՝ այն, նույնիսկ չդարձան էլ, որ ինձ շնորհակալություն հայտնեն... Եվ ահա այս պատմությունից հետո, դուք վեր քաշելով պարանը, սատկած էշի փոխարեն՝ գտաք մի կենդանի բուրատինո։

— Ես թքել եմ քո պատմության վրա,— կատաղած գոչեց գնորդը։ Ես գիտեմ, որ քեզ գնելու համար քսան սոլդո եմ ծախսել և ուզում եմ, որ իմ փողն էլի իմ ձեռքը գա։ Գիտե՞ս ինչ. քեզ նորից շուկա կտանեմ և որպես բուխարիկի չոր փայտ՝ կշռով կվաճառեմ։

— Վաճառեք, խնդրեմ, ես գոհ եմ,— ասաց Պինոքիոն։ Բայց այսպես ասելու ժամանակ՝ մի գեղեցիկ թռիչք գործեց ու ընկավ ջուրը։ Նա ուրախ լող տալով ու հեռանալով ափից, բարձրաձայն ասում էր խեղճ գնորդին.

— Մնաք բարով, աղա, եթե թմբուկ պատրաստելու համար կաշվի կարիք կունենաք՝ հիշեք իմ մասին։

Հետո էլ ծիծաղում էր ու շարունակում լող տալ։ Քիչ հետո, շուռ գալով, նա ավելի ուժգին գոռաց.

— Մնաք բարո՜վ, աղա. եթե բուխարին վառելու համար չոր ցախի կարիք կունենաք՝ հիշեք իմ մասին։

Բանն այն է, որ մի ակնթարթում նա այնքան հեռացավ, որ գրեթե չէր երևում. կամ ծովի երեսին երևում էր որպես մի սև գիծ, որը մերթ ընդ մերթ ջրից դուրս էր ցցում ոտքերը, գլխկոնձի տալիս ու թռչկոտում ինչպես դելֆինը լավ տրամադրության ժամանակ։

Եվ այդպես բարեհաջող լող տալու պահին Պինոքիոն ծովի մեջտեղը մի ժայռ տեսավ, որը կարծես թե սպիտակ մարմարից լիներ։ Այդ ժայռի գլխին մի այծիկ կար կանգնած։ Նա սիրալիր

կերպով մկկում էր ու մոտենալու նշան անում նրան։

Ամենազարմանալի բանն այն էր, որ այդ այծիկի մազերի գույնը ոչ սպիտակ էր, ոչ սև և ոչ էլ երկու գույների խառնուրդ, ինչպիսի գույն ունենում են մյուս այծիկները, այլ կապույտ էր, բայց այնպիսի մի փայլ ունեցող կապույտ, որ անչափ հիշեցնում էր այն փոքրիկ, գեղեցիկ աղջկա մազերը։

Պատկերացրեք, թե ինչպիսի ուժգնությամբ սկսեց խփել Պինոքիոյի սիրտը։ Կրկնապատկելով ուժերը, նա սկսեց լող տալ դեպի սպիտակ ժայռը։ Եվ արդեն կես ճանապարհին էր, երբ հանկարծ ջրի տակից՝ ծովային հրեշի մի սարսափելի գլուխ դուրս եկավ։ Հրեշի անդունդի նմանվող բաց երախում, երեք շարք այնպիսի ատամներ կային, որոնց անգամ նկարած տեսնելիս՝ մարդ սարսափահար կարող էր լինել։

Եվ գիտե՞ք ով էր այդ ծովային հրեշը։ Այդ ծովային հրեշը ոչ ավել, ոչ էլ պակաս՝ այն ահռելի շնաձուկն էր, որի մասին բազմաթիվ անգամ հիշել ենք այս պատմության մեջ և, որը իր պատճառած արյունահեղությունների և ագահության պատճառով՝ կոչվում էր «ձկների և ձկնորսների Աթիլլա»։

Պատկերացրեք խեղճ Պինոքիոյի սարսափը՝ հրեշին տեսնելիս։ Նա աշխատեց խուսափել, փոխել ճանապարհը, փորձեց փախչել, սակայն այն չռված ահռելի գնդակի արագությամբ անընդհատ դեպի իր կողմն էր սլանում։

— Շտապի՛ր, Պինոքիո, ի սեր աստծո,— մկըկալով ձայն էր տալիս գեղեցիկ այծիկը։

Եվ Պինոքիոն հուսակտուր լող էր տալիս, գործի դնելով՝ ձեռքերը, ոտքերը, կուրծքը։

— Շո՜ւտ, Պինոքիո, հրեշը մոտենում է...

Եվ Պինոքիոն, իր ողջ ուժերը հավաքած, շնչառությունը կրկնապատկած լողում էր։

Զգո՜ւյշ եղիր, Պինոքիո՛... հրեշը հասնում է քեզ... ահա և նա... ահա և նա... շտապիր, եթե ոչ՝ կորած ես...

Եվ Պինոքիոն մի չտեսնված արագությամբ լողալով, սլանում էր, սլանում էր, սլանում, կարծես թե հրացանից արձակած գնդակ լիներ։

Արդեն ժայռին էր հասել, ու այծիկն էլ ,ամբողջապես կախվելով ծովի վրա, մեկնել էր նրան իր առջևի ոտքը՝ օգնելու և նրան ջրից դուրս հանելու համար...

Բայց արդեն ուշ էր։ Նրան էր հասել Հրեշը, շունչը ներս քաշելով այնպես խմեց խեղճ բուրատինոյին, որ կարծես թե հավի ձու էր խմում։ Խմելուց հետո էլ այնպիսի դաժանությամբ ու ագահությամբ կուլ տվեց, որ Պինոքիոն նրա փորն ընկնելիս ուժեղ կպավ հատակին և մի քառորդ ժամ ուշքը չէր գալիս գլուխը։

Երբ նա սթափվեց, չէր կարողանում հասկանալ, թե ինչ աշխարհ էր ընկել։ Նրա շուրջը սոսկալի մութ էր, այնքան մութ, որ նրան թըվում էր, թե գլխիվայր մըտել է մի թանաքով լի թանաքամանի մեջ։ Սկսեց ականջ դնել, բայց ոչինչ



լսեց, բացի քամու ուժեղ հոսանքից, որը մերթ ընդ մերթ խփում էր նրա երեսին: Սկզբում չէր կարողանում հասկանալ, թե որտեղից է գալիս քամու այդ հոսանքը. բայց հետո գլխի ընկավ, որ դա հրեշի թոքերիցն է: Շնաձուկը ծայրահեղ կերպով տառապում էր աստմայով, և երբ շնչում էր, թվում էր թե հյուսիսային քամի է փչում:

Պինոքիոն սկզբում ջանում էր իրեն համարձակ պահել, սակայն երբ վերջնականապես համոզվեց, որ փակված է ծովային հրեշի փորում, սկսեց լաց լինել ու ճղճղալ:

— Օգնությո՜ւն, օգնությո՜ւն, ա՜խ, վա՛յ ինձ. մի՞թե ոչ ոք չկա, որ գա ինձ փրկելու:

— Ո՞ւմ ես ուզում, որ քեզ փրկի, դժբախտ...— մթության մեջ հնչեց ջարդված ու լարից ընկած կիթառի ձայնի նման մի ձայն:

— Այդ ո՞վ է, խոսում այդպես,— հարցրեց Պինոքիոն, զգալով, որ սարսափից սառչում է:

— Ես եմ, խեղճ Թյուննոսը, ինձ էլ է շնաձուկը քեզ հետ միասին կուլ տվել: Իսկ դու ի՞նչ ձուկ ես:

— Ես ձկների հետ կապ չունեմ: Ես բուրատինո եմ:

— Իսկ եթե ձուկ չես, ապա ինչպե՞ս ես թույլ տվել, որ հրեշը քեզ կուլ տա:

— Ես չեմ թույլ տվել, բանն էլ հենց այն է, որ ինքն է կուլ տվել: Իսկ հիմա ի՞նչ ենք անելու այս մթության մեջ:

— Հնազանդվելու ենք և սպասելու՝ մինչև որ Շնաձուկը երկուսիս էլ մարսի...

— Բայց ես չեմ ուզում մարսվել,— բղավեց Պինոքիոն և նորից սկսեց լաց լինել:

— Ես էլ չէի ուզենա մարսվել,— ավելացրեց Թյուննոսը,— բայց ես մի քիչ փիլիսոփա եմ և ինձ մխիթարում եմ մտածելով, որ երբ Թյուննոս ես ծնվում, ավելի պատվաբեր է ջրի տակ մեռնել, քան թե յուղի...

— Համբերությո՜ւն,— գոչեց Պինոքիոն:

— Այդ իմ կարծիքն է,— պատասխանեց Թյուննոսը,— իսկ կարծիքները, ինչպես ասում են քաղաքագետ Թյուննոսները, հարգվում են:

— Մի խոսքով... ես ուզում եմ այստեղից գնալ... ուզում եմ փախչել...

— Փախիր, եթե այդ կհաջողվի...

— Շա՞տ է մեծ մեզ կուլ տվող այս շնաձուկը,— հարցրեց բուրատինոն:

— Պատկերացրու, որ նրա մարմինը մի կիլոմետր երկարություն ունի՝ չհաշված պոչը:

Այն ժամանակ, երբ նրանք մթության մեջ այսպես զրուցում էին, Պինոքիոյին թվաց, որ հեռու հեռվում ինչ-որ լույսի պես մի բան է նշմարվում:

— Ի՞նչ կարող է լինել այդքան հեռվում երևացող այդ թույլ լույսը,— ասաց Պինոքիոն:

— Երևի մեր դժբախտության ընկերներից մեկըն է, որը մեր նման ինքն էլ է սպասում մարսվելուն...

— Ուզում եմ գնալ նրան տեսնելու: Մի այնպիսի ծեր ձուկ չի՞ լինի, որ կարողանա ինձ փախչելու ճանապարհ ցույց տալ:

— Սրտանց հաջողություն եմ ցանկանում քեզ, սիրելի բուրատինո:

— Մնաս բարով, Թյուննոս:

— Գնաս բարով, բուրատինո, հաջողություն քեզ:

— Որտե՞ղ մենք նորից իրար կտեսնենք:

— Ո՞վ գիտե... Ավելի լավ է, այդ մասին նույնիսկ չմտածել:



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

### ՏՈԹԱԿԵԶ ԱՇԽԱՐՀԱՄԱՍ

Հարուստ է Աֆրիկայի բնությունը: Նրա անտառներում թափառում են փիղը, ռնգեղջյուրը, ընձուղտը, առյուծը և ուրիշ շատ




կենդանիներ ու գազաններ, գետերում լողում են կոկորդիլոսը և գետաձին, իսկ օդում ճախրում են բազմազան թռչուններ: Բաց տարածություններում կարելի է հանդիպել արագավազ ջայլամին:

Իսկ ի՞նչ փարթամ է բուսականությունը արևադարձային անտառներում: Այնտեղ կան և՛ փյունիկյան արմավենու, և՛ կոկոսի ընկույզի ծառեր, հսկայական բաոբաբներ... Իսկ սուրճի և կաուչուկի տնկարաննե՞րը: Շքեղ բուսականությանը հաջորդում են խանձված սավանները, գեղեցիկ կանաչ օազիսներին՝ անհյուրընկալ, տոթակեզ անապատները: Դրանցից ամենամեծը Սահարան է: Հազարավոր կիլոմետրեր ձգվում է անջուր և ավազոտ անապատը...

Շատ հին ժամանակներում Աֆրիկան հարավային մեծ ցամաքի՝ Գոնդվանայի մի մասն է եղել: Այդ ցամաքն ընդգրկել է Հնդկաստանը, Ավստրալիան և Հարավային Ամերիկան:

Գոնդվանայի մի մասը ընկղմվեց ծովերի տակ, առաջացան Ատլանտյան և Հնդկական օվկիանոսները: Աֆրիկան դարձավ առանձին աշխարհամաս: Դրանից հետո Աֆրիկան «հանգստացավ», զարգացավ նրա կյանքը:

Ո՞վ չգիտի Նեղոսի մասին, որի ափերի մոտ սկսեց ծաղկել հին աշխարհի կուլտուրան: Ո՞վ չի լսել Կարթագենի անունը, որը կործանեցին հռոմեացիները:

Բայց Աֆրիկայի ափերի մեծ մասը մարդկությանը հայտնի դարձավ այն ժամանակ, երբ կատարվեց առաջին շուրջաֆրիկյան ճանապարհորդությունը: Այդ ճանապարհով եվրոպացիները ուզում էին գնալ Հնդկաստան: Դրանից հետո գաղութարարները թափանցեցին Աֆրիկայի խորքերը, գրավեցին «սև աշխարհամասի» մեծ մասը: Նրանք ստրկացնում էին սև բնակիչներին՝ նեգրերին, և վաճառում, կամ ոչնչացնում, հարստանում էին այդ աշխարհամասի ոսկով, փղոսկրով և այլ հարստություններով:

Այժմ կա Ֆրանսիական Աֆրիկա, Բրիտանական Աֆրիկա, Իսպանական Աֆրիկա և Պորտուգալական Աֆրիկա: Ամերիկացիները այդ աշխարհամասի «նոր տերերից» են: Բայց Աֆրիկայի ժողովուրդներն արթնացել են և կռվում են իրենց ազատության համար: Եգիպտոսը, Սուդանը, Լիբիան, Եթովպիան, Լիբերիան արդեն պատկանում են իրենց իսկական տերերին՝ աֆրիկացիներին:

Աֆրիկայի մասին մանրամասն պատմում է աշխարհագրագետ Կամսար Ավետիսյանը իր «Տոթակեզ աշխարհամասը» գրքում:

Կարդացեք այդ հետաքրքրական գիրքը:

### ԱՌԱՋԻՆ ԳԻՐՔԸ ԲՈՒՅՍԵՐԻ ՄԱՍԻՆ

Դուք գիտե՞ք, թե ինչ է բույսը. ի՜նչ խոսք, որ գիտեք: Բայց ձեզանից շատերը չեն, որ գիտեն, թե ինչպիսի բույսեր են լինում և ինչեր են նրանից պատրաստում մարդիկ: Օրինակ սուպը, քաշովին, կոմպոտը, որ դուք




ուտում եք՝ բոլորը բույսերից են: Իսկ հա՞ցը, շաքա՞րը, կոնֆե՞տը, ձեր սպիտակեղենն ու հագո՞ւստը, ձեր տետրերն ու գրքե՞րը. դրանք նույնպես առանց բույսերի չէին լինի: Սեղանները, աթոռներն ու նստարանները, գրատախտակն ու հատակը փայտից են շինված, բայց չէ՞ որ փայտը ծառերից ենք ստանում, իսկ ծառը բույս է:

Դուք բրնձով սուպ կամ փլավ շատ կերած կլինեք, բայց դուք գիտե՞ք, թե բրնձի բույսից է՛լ ինչ կարելի է պատրաստել: Այ, Սուրիկի գեղեցիկ, ամուր ու ճկուն ծղոտե գլխարկը, կամ նրա մայ-

րիկի լայնեզր գլխարկը գիտե՞ք ինչից են պատրաստել։ Դրանք էլ պատրաստված են բրնձի բույսից, նրա ցողունից։ Կամ, ասենք, արևածաղիկը։ Դուք երևի սիրում եք արևածաղիկ ուտել, բայց չգիտեք, որ ամեն օր եք արևածաղիկ ուտում՝ տապակած կարտոֆիլի, սալաթի ու կարկանդակի հետ, որ պատրաստվում են արևածաղկի յուղով։ Կամ շա՞տ բան գիտեք դուք եգիպտացորենի, կարտոֆիլի ու կաղամբի, թըրթընջուկի ու սալաթի, վուշի ու բամբակենու մասին։

Դրանց մասին կարելի է կարդալ Լ. Կոնի «Առաջին գիրքը բույսերի մասին» պատկերազարդ գրքում, որ վերջերս լույս է ընծայել Հայպետհրատը։

Կարդացեք այս գիրքը, որ ոչ միայն ճանաչեք բույսը, այլև նրա թշնամիներին՝ դաշտային միջատներին ու թրթուրներին, նրա բարեկամներին՝ սարյակներին ու մյուս թռչուններին։

Երբ մեծանաք, դուք շատ գրքեր կգտնեք բույսերի մասին, իսկ առայժմ ձեզ համար այս գիրքն է գրված։

# ՀՄՈՒՏ ՁԵՌՔԵՐԻ ՀԱՄԱՐ

Ինչե՞ր ասես չեն պատրաստում պատանի տեխնիկները, շինարարներն ու մոդելիստները։ Նրանց հմուտ ձեռքերը ձև են տալիս փայտին ու մետաղին, ստվարաթղթին ու բամբուկին, և




ահա պատրաստ է ինքնաշեն սավառնակը, պլանները, էլեկտրամոտորը։ Բայց շատ շնորհալի պիոներներ դեռ կան, որ չգիտեն, թե ինչպես պատրաստեն այս կամ այն գործիքը, խաղալիքը, մեքենան, կամ նավակը։ Նրանք պետք է սովորեն, պետք է ընդգրկվեն պատանի տեխնիկների կայանի, պիոներական տների ու պալատների խմբակներում, պետք է դպրոցում լավ սովորեն, որպեսզի կարողանան վարպետություն ձեռք բերել։ Նրանք պետք է կարդան նաև օժանդակ գրականություն։

Պատանի տեխնիկների կենտրոնական և մոսկովյան մարզի կայանը «Հմուտ ձեռքերի համար» սերիայով արդեն մի շարք գրքույկներ է հրատարակել։ Ահա այդ գրքույկներից մեկը՝ «Բայդարկա» տիպի նավակի մասին։ Այստեղ տրված են «Բայդարկայի» մանրամասն գծագիրն ու չափերը։

Օգտվելով այդ գծագրից և կից տրված բացատրագրից, հմուտ ձեռքերի պատանի վարպետները կկարողանան ինքնաշեն բայդարկա պատրաստել։ Ահա մի ուրիշ գրքույկ, որտեղ տրված է ինքնաթիռի սխեմատիկ մոդելը։ Սա մի շատ հետաքրքիր ձեռնարկ է պատանի մոդելիստների համար և նրանց համար, ովքեր ուզում են մոդելիստ դառնալ։ Այս մոդելը շատ պարզ է, պատրաստելու համար նյութ քիչ է պահանջվում։ Գործիքներ էլ շատ չեն պահանջվում։ Այդպիսի մոդելներ կարելի է պատրաստել և՛ տանը, և՛ պիոներական ճամբարներում, և՛ հմուտ ձեռքերի խմբակներում։




Իսկ դուք լա՞վ գիտեք օդապարուկ պատրաստել։ Թվում է, թե ի՞նչ կա, թելի ծայրին ամրացրեցիր թղթի կտորն ու բաց թողեցիր՝ ամեն ինչ վերջացավ։ Բայց ո՛չ, իսկական օդապարուկ պատրաստելն էլ հեշտ չէ. այնպիսի օդապարուկ, որ և՛ լավ թռչի և՛ գեղեցիկ լինի։ Օդապարուկը շատ հին բան է։ Դեռևս 4000 տարի առաջ Չինաստանում օդապարուկներ էին պատրաստում և բաց թողնում օդ։ Այդ օդապարուկները զանազան ձևեր էին ունենում, բայց ամենից շատ չինացիները օդապարուկին վիշապի տեսք էին տալիս։




Սակայն օդապարուկը լոկ խաղալիք չէ, այլ օգտագործվում է գիտական նպատակներով։ Նրանով օդերևութաբանական սարքավորումներ, ֆոտոապարատներ և այլ գործիքներ են բարձրացնում և ամենից շատ օգտագործվում է ավիամոդելիզմի մեջ։ Որպեսզի կարողանաք լավ օդապարուկ պատրաստել, պետք է իմանաք նրանց լավագույն տեսակների կառուցվածքը։ Ահա գրքույկներից մեկում էլ տրված է օդապարուկի գծագիրը և նկարագրությունը։

Մեր ամսագրի այս համարում մենք տպագրում ենք հաստատուն էլեկտրամագնիսով էլեկտրաշարժիչի գծագիրը և բացատրությունը, որ մենք վերցրել ենք հմուտ ձեռքերի համար հրատարակված գրքույկից։ Այդ հանրամատչելի, շատ օգտակար գրքույկներից պատանի տեխնիկների կենտրոնական կայանն այս տարի կհրապարակի 36 անուն։ Դրանք շատ պետք կգան ձեր աշխատանքում, ձեռք բերեք այդ գծագրերը։ Եթե Հայգրքի խանութներում չլինեն, դուք կարող եք դիմել հետևյալ հասցեով՝ Москва, 5-ая Черемушкинская ул. магазин № 93 Москниготорга. Խանութը ձեզ փոստով




կուղարկի ձեր ուզած բրոշյուրը։ Դրանք էժան են, ընդամենը 85 կոպեկ արժեն։

Խնդրում եմ ամսագրի միջոցով պատասխանեք այս հարցին, ո՞վ և ե՞րբ է ստեղծել թվաբանական նշանները։

Ա. Մնացականյան

(Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի 2-րդ դասարանի աշակերտ)։

Այժմ աշխարհի բոլոր դպրոցներում գործածվում են թվաբանության գործողությունների միևնույն նշանները, գումարման համար՝ +, հանման համար՝ —, բազմապատկման համար՝ × (կամ՝.) և բաժանման համար՝ ::

Հնում թվաբանական գործողությունների կատարման այժմյան եղանակները գոյություն չեն ունեցել, և մարդիկ հաշվումները կատարել են բազմաթիվ եղանակներով։ Տարբեր ժողովուրդներ, տարբեր նշաններ են գործածել։

Հետագայում, թվաբանության զարգացման զուգընթաց, գործողությունների քանակը աստիճանաբար կրճատվել է և հասել է չորսի։ Գումարման և հանման նշանները հանդես են եկել 15-րդ դարում։ 1489 թվականին գերմանացի մաթեմատիկոս Վիդմանը առաջին անգամ օգտագործում է այդ նշանները իր թվաբանության գրքում։ Դրանից առաջ + և — նշանները գործածվել են իտալական մեծ նկարիչ Լեոնարդո Դա Վինչու ձեռագրերում։

Բազմապատկման նշանը գործածության մեջ է մտել 16-րդ դարում, իսկ բազմապատկման մյուս նշանը . և բաժանման : նշանը առաջին անգամ գործածել է գերմանականականավոր մաթեմատիկոս Լայբնիցը 1694 թվականին։

Միջակ և մեծ փակագծերի նշանները [ ] , { } հանդես են եկել 16-րդ դարի վերջում, հանրահաշվի հիմնադիրներից մեկի՝ Վիետի աշխատություններում։ Փոքր փակագծի նշանը ( ) հանդես է եկել 17-րդ դարում։ Անգլիական հանրահաշվագետ Ռեկորդը 1557 թվականին առաջին անգամ գործածեց = նշանը։ Նա այդպիսի նշանակումը հիմնավորում է նրանով, որ նշանի մեջ մտնող երկու իրար զուգահեռ հատվածները միմյանց հավասար են։

Այս նշանները երևան գալուց հետո աստիճանաբար կիրառում են բոլոր երկրներում և բոլոր ժողովուրդների մոտ։ Թվաբանական նշանների տարածման գործում խոշոր դեր են կատարել աշխարհահռչակ գիտնականներ Իսահակ Նյուտոնը, Լայբնիցը և ուրիշները։

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

(Ֆիզիկոմաթեմատիկական գիտությունների թեկնածու)

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝* Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

*Չորրորդ էջը՝* Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

## ԻՆՉՊԵՍ ՕԳՏՎԵԼ ՕՐԱՑՈՒՅՑԻՑ

Օրացույցի վերին մասում հերթականությամբ դասավորված են 1900-ից մինչև 2000 տարեթվերը: Գրված են միայն տարեթվերի վերջին երկու թվանշանները: Նահանջ տարեթվերը ընդգծված են: Տարեթվերի ձախ կողմում ցույց է տրված տարեթվերի հորիզոնական շարքերի 1-ից մինչև 7 հերթական համարները:

Ենթադրենք, թե մենք ուզում ենք իմանալ ինչ օր է լինելու 1956 թվականի սեպտեմբերի 1-ը: Դրա համար նախ պետք է գտնել «1956» տարեթիվը, որը գտնելու համար օրացույցի վերին մասում փնտրում ենք «56» թիվը: Տեսնում ենք, որ «56» թիվը գտնվում է տարեթվերի հորիզոնական «1» շարքում:

Այդ հիշենք:

Այժմ, օրացույցի միջին մասում գտնվող ամիսների ցուցակում փնտրենք սեպտեմբեր ամիսը:

Գտնելով սեպտեմբեր ամիսը, նայենք այդ տողի ուղղությամբ դեպի աջ և այնտեղ էլ փնտրենք մեր կողմից նախկինում նշված տարեթվերի հորիզոնական շարքերի «1» թվանշանը:

«1» թվանշանը գտնելուց հետո նայենք այդ թվանշանի ուղղությամբ դեպի ներքև, այնտեղ (գծագրի ներքևի աջ անկյուն) կհանդիպենք շաբաթվա օրերի աղյուսակին (շաբաթվա օրերը գրված են կրճատված):

Շաբաթվա օրերի աղյուսակը անմիջապես կապված է իր ձախ կողմում գտնվող, ամսվա օրերը ցույց տվող աղյուսակի հետ: Նրանք միասին ներկայացնում են տարվա ամիսների, դրանց թվում նաև սեպտեմբեր ամսվա օրացույցը:

Այժմ այդ երկու աղյուսակները դիտելով կարելի է ասել, որ 1956 թվականի սեպտեմբերի 1-ը շաբաթ օր է: Բոլոր գործողությունները այժմ ավելի հեշտ պատկերացնելու համար նայեցեք սխեմային:



*Համարի գեղարվեստական ձևավորումը նկարիչ Ս. Մուրադյանի*

Ձեռագրերը չեն վերադարձվում


**Խմբագրական կոլեգիա**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱԶԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 02805: Պատվեր 899: Տիրաժ 5000: Տպագրական 4,1 մ.: Ստորագրված է տպագրության 10/IX 1956 թ.: Գինը 2 ռ.:*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության*

*№ 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65:*

# XX ԴԱՐԻ ՕՐԱՑՈՒՅՑ

| | | | | | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | 00 | 06 | | 17 | 23 | 28 | 34 | | 45 | 51 | 56 | 62 | | 73 | 79 | 84 | 90 | |
| 2 | 01 | 07 | 12 | 18 | | 29 | 35 | 40 | 46 | | 57 | 63 | 68 | 74 | | 85 | 91 | 96 |
| 3 | 02 | | 13 | 19 | 24 | 30 | | 41 | 47 | 52 | 58 | | 69 | 75 | 80 | 86 | | 97 |
| 4 | 03 | 08 | 14 | | 25 | 31 | 36 | 42 | | 53 | 59 | 64 | 70 | | 81 | 87 | 92 | 98 |
| 5 | | 09 | 15 | 20 | 26 | | 37 | 43 | 48 | 54 | | 65 | 71 | 76 | 82 | | 93 | 99 |
| 6 | 04 | 10 | | 21 | 27 | 32 | 38 | | 49 | 55 | 60 | 66 | | 77 | 83 | 88 | 94 | |
| 7 | 05 | 11 | 16 | 22 | | 33 | 39 | 44 | 50 | | 61 | 67 | 72 | 78 | | 89 | 95 | 00 |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| ՀՈՒՆՎԱՐ *հասարակ* ՀՈԿՏԵՄԲԵՐ | 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 |
| ՀՈՒՆՎԱՐ *նահանջ* ԱՊՐԻԼ ՀՈՒԼԻՍ | 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 1 |
| ՍԵՊՏԵՄԲԵՐ ԴԵԿՏԵՄԲԵՐ | 3 | 4 | 5 | 6 | 7 | 1 | 2 |
| ՀՈՒՆԻՍ | 4 | 5 | 6 | 7 | 1 | 2 | 3 |
| ՓԵՏՐՎԱՐ *հասարակ* ՄԱՐՏ ՆՈՅԵՄԲԵՐ | 5 | 6 | 7 | 1 | 2 | 3 | 4 |
| ՓԵՏՐՎԱՐ *նահանջ* ՕԳՈՍՏՈՍ | 6 | 7 | 1 | 2 | 3 | 4 | 5 |
| ՄԱՅԻՍ | 7 | 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 |

**ԱՄՍՎԱ ՕՐԵՐԻ ՔԱՆԱԿԸ**

ՀՈՒՆՎԱՐ ՄԱՐՏ ՄԱՅԻՍ ՀՈՒԼԻՍ ՕԳՈՍՏՈՍ ՀՈԿՏԵՄԲԵՐ ԴԵԿՏԵՄԲԵՐ 31 օր

ԱՊՐԻԼ ՀՈՒՆԻՍ ՍԵՊՏԵՄԲԵՐ ՆՈՅԵՄԲԵՐ 30 օր

ՆԱՀԱՆՋ ՏԱՐՎԱ ՓԵՏՐՎԱՐ 29 օր

ՀԱՍԱՐԱԿ ՏԱՐՎԱ ՓԵՏՐՎԱՐ 28 օր

ԱՄՍԱԹՎԵՐԸ

| | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | 8 | 15 | 22 | 29 | երկշ | երշ | չշ | հշ | ուր | շա | կի |
| 2 | 9 | 16 | 23 | 30 | երշ | չշ | հշ | ուր | շա | կի | երկշ |
| 3 | 10 | 17 | 24 | 31 | չշ | հշ | ուր | շա | կիր | երկշ | երշ |
| 4 | 11 | 18 | 25 | | հշ | ուր | շա | կիր | երկշ | երշ | չշ |
| 5 | 12 | 19 | 26 | | ուր | շա | կիր | երկշ | երշ | չշ | հշ |
| 6 | 13 | 20 | 27 | | շա | կիր | երկշ | երշ | չշ | հշ | ուր |
| 7 | 14 | 21 | 28 | | կիր | երկշ | երշ | չշ | հշ | ուր | շա |




Երեխանե՛ր, մենք հիմա մեր լուսանկարչական ապարատն ունենք, որ շրջում է դպրոցներում, հասարակական վայրերում ու փողոցներում և մեզ այսպիսի լուսանկարներ է բերում: Ի՞նչ եք կարծում, ի՞նչ անուն տանք մեր ապարատին: